

# Արձանի մոտ

Ա. ՂԱԶԻՆՅԱՆ

Մենք՝ գյուղական մանուկներ,
Փնջած վայրի ծաղիկներ
  Ու պսակներ հյուսած,
Կանգնել էինք Լենինի
Արձանի մոտ սիրելի,
  Երազուն ու հուզված։
— Նա գարուն է մեզ բերել,
Իսկ մենք՝ նրան ծաղիկներ,—
  Ասաց մի թուխ տղա։
Հետո կամաց դրինք ցած
Ծաղիկները ցողաթաց՝
  Պատվանդանի վրա։

№ 4 1958 թ.
ԱՊՐԻԼ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՄԱՔՈՒՐ ԱՓՍԵՆՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Բոլորը նստել էին դարավանդում դրված սեղանի շուրջը։ Սեղանի մոտ կար երեք երեխա. երկու աղջիկ և մի տղա։ Նրանք անձեռոցիկները կապել էին կրծքերին և սուսիկ-փուսիկ նստած սպասում էին, թե երբ իրենց սուպ կբերեն։ Վլադիմիր Իլյիչը նայում էր նրանց և կամաց զրուցում։ Ահա մատուցեցին սուպը։ Երեխաները վատ կերան. գրեթե ամբողջ սուպը մնաց ափսեներում։ Վլադիմիր Իլյիչին դուր չեկավ դա, բայց նա ոչինչ չասաց։ Մատուցեցին երկրորդը։ Նույն պատմությունը. գրեթե ամբողջը նորից մնաց ափսեներում։

— Իսկ դուք մաքուր ափսեների ընկերության անդա՞մ եք,—հանկարծ բարձրաձայն հարցրեց Վլադիմիր Իլյիչը, դիմելով Նադյա անունով աղջկան, որը նստած էր նրա կողքին։

— Ո՛չ,—ցածր ձայնով պատասխանեց Նադյան և շփոթված նայեց մյուս երեխաներին։

— Իսկ դո՞ւ։ Իսկ դո՞ւ,—Վլադիմիր Իլյիչը դիմեց տղային ու մյուս աղջկան։

— Ո՛չ, մենք անդամ չենք,—պատասխանեցին երեխաները։

— Ինչպե՞ս թե։ Բա ինչո՞ւ եք ուշացել։

— Մենք չգիտեինք, մենք ոչինչ չենք իմացել այդ ընկերության մասին,—շտապելով ասացին երեխաները։

— Իզուր։ Շա՜տ ափսոս։ Դա վաղուց արդեն գոյություն ունի։

— Իսկ մենք չենք իմացել...—հիասթափված ասաց Նադյան։

— Իմիջիայլոց, դուք այդ ընկերության համար պիտանի չեք։ Միևնույն է, ձեզ չեն ընդունի,—լուրջ ասաց Վլադիմիր Իլյիչը։

— Ինչո՞ւ, ինչո՞ւ չեն ընդունի,—միմյանց հերթ չտալով հարցրին երեխաները։

— Ինչպե՞ս թե «ինչու»։ Իսկ ինչպիսի՞ն են ձեր ափսեները։ Նայեցեք։ Դե, ձեզ ինչպե՞ս կարող են ընդունել, երբ դուք ամբողջը թողնում եք ափսեներում։

— Մենք հիմա կուտենք կվերջացնենք։—Եվ երեխաները կերան բոլորը, ինչ որ թողել էին ափսեների մեջ։

— Եթե դուք ուղղվեք, այն դեպքում կարելի է փորձել։ Այնտեղ կրծքանշաններ էլ են տալիս նրանց, ում ափսեները միշտ մաքուր կլինեն,—շարունակեց Վլադիմիր Իլյիչը։

— Եվ կրծքանշանն՞ե՜ր... Իսկ ինչպիսի՞ կրծքանշաններ են,—հարցուփորձ էին անում երեխաները։—Այդ դեպքում ի՞նչ պետք է անել։

— Պետք է դիմում տալ։

— Իսկ ո՞ւմ։

— Ինձ։

Երեխաները սեղանի մոտից վեր կենալու թույլտվություն խնդրեցին և վազեցին դիմում գրելու։

Մի քիչ հետո նրանք դարավանդ վերադարձան և



հանդիսավոր կերպով թուղթը հանձնեցին Վլադիմիր Իլյիչին։

Վլադիմիր Իլյիչը կարդաց, երեք սխալ ուղղեց և անկյունում մակագրեց.

«Ընդունել. Վ. Ի.»։

*Վ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ*










# „ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՆԵՐԸ“

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

## Ա

Սենյակում խոր լռություն էր տիրում։

Վարագույրները կիսամութի մեջ էին ընկղմել կաղնյա ծանր պահարանը, բազմոցը և գրասեղանը, որի վրա վառվում էր «նիկելե» լամպը։ Դեղնավուն լույսը լուսավորում էր գրասեղանի հազիվ մի փոքր մասը և նրա առաջ նստած Խոստիկի մտածկոտ ու լարված դեմքը։

Դուռը կամաց ու համարյա անձայն բացվեց։ Սակայն Խոստիկն անմիջապես բարձրացրեց գլուխը, որովհետև օդի հոսանքը քիչ էր մնում նրա առջևից փախցներ աստղաբաշխական քարտեզը։

— Դո՞ւ ես,— հարցրեց Խոստիկը։ Լռության մեջ նրա բարձր ձայնը բավական շփոթեցրեց դռան շեմքին կանգնած երկայնահասակ պատանուն։— Դե, ի՞նչ ես քարացած կանգնել։ Ներս արի։

— Իսկ տանը մարդ չկա՞։

— Միայն ես եմ... Որքա՞ն ես բերել։

Սենյակ մտավ՝ աչքերը վախից պլշած, Երկար Մակարը։ Նա անհամարձակ քայլերով մոտեցավ գրասեղանին և նույն զգույշ հայացքով նայեց շուրջը։ Հետո նա բացեց ձեռքին բռնած փաթեթն ու Խոստիկի առաջ դրեց գիպսից ձևված մի ձի։

— Բերել եմ,— շշնջաց նա։

— Այ քեզ բա՞ն,— զոչեց Խոստիկն ու սկսեց ծիծաղել։

— Իզուր ես ծիծաղում։ Այստեղ իմ խնայողություններն են,— պատասխանեց Երկար Մակարն ու, ձին վերցնելով՝ այնպիսի ուժով հարվածեց հատակին, որ փշուր-փշուր եղավ։

Կտորտանքների մեջ հայտնվեցին մետաղյա դրամներ, ութ հատ ծալված ռուբլիանոց, հնգանոցներ և, նույնիսկ, երկու հատ տասանոց թղթադրամ։

— Ահա,— հպարտությամբ ասաց Երկար Մակարը, գետնից հավաքելով իր ամբողջ հարստությունը։— Կբավականացնի՞...

— Երևի... Բայց այդ զիբիլը ես մաքրողը չեմ։ Ինքդ հատակը կեղտոտեցիր, ինքդ էլ հավաքիր, թե չէ, մեկ էլ տեսար, մայրիկս վրա հասավ։

Երկար Մակարը խղճալի հայացքով նայեց հատակով մեկ տարածված գիպսի փշուրներին ու, կռանալով, սկսեց հավաքել։

— Իսկ դու չե՞ս օգնի, Խոստիկ։

— Չե՞ս տեսնում, որ աստղաբաշխությամբ եմ զբաղված,— պատասխանեց Խոստիկն ու, գլուխն ավելի կախելով քարտեզի վրա՝ կարմիր մատիտով մի կլոր շրջան քաշեց 1937 համարը կրող այն փոքրիկ մոլորակի վրա, որը գտնվում է Մարսի և Յուպիտերի միջև։

— Մակար, վերջացրի՞ր...

— Հը՛...

— Մոտ արի։ Տեսնո՞ւմ ես այս մոլորակը։

— Տեսնում եմ։

— Սա շատ փոքր մոլորակ է։ Մի քանի հազար անգամ ավելի փոքր, քան մեր երկիրը։ Այս մոլորակը անմարդաբնակ է։ Մեր առաջ խնդիր է դրված՝ բնակություն հաստատել նրա վրա։ Պա՞րզ է... Մեր խնայողությունները, որոնք կազմում են...— Պստիկ Խոստիկը մի հաստափոր գրքի արանքից հանեց մի քանի թղթադրամ և միացրեց Մակարի բերած փողերին,— որոնք կազմում են 78 ռուբլի 65 կոպեկ, մենք պետք է հատկացնենք այդ խնդրի լուծմանը։

— Իսկ այդ խնդիրը թվաբանությունի՞ց է,— հարցրեց Մակարը։

— Ո՛չ... Խնդիրը մեր առաջ դրել է մարդկությունը, հասկացա՞ր...

Երկար Մակարը պատասխանի փոխարեն միայն գլուխը քորեց։ Ինչե՞ր ասես չի հնարի այդ Խոստիկը։ Խնդիրներ... Մարդկություն... Փոքր մոլորակներ...









Մակարը բոլորովին դեմ չէր Յուպիտեր թռչելուն։ Միայն թե խնայողությունները քիչ էին։ Տոմսի համար դրամը չէր բավականացնի։ Ա՛յ, կարելի էր գնալ այդ հսկա մոլորակի վրա ու կարգին ճանապարհորդել…

Նրան սթափեցրեց Պատիկ Խոստիկի ձայնը։

— Դե, Մակար, որոշված է… Մեր նավում կամուրջներն այրվել են…

— Ի՞նչ կամուրջներ,— վախեցած հարցրեց Մակարը։

— Կամուրջներ, է՜լի… դե, ես ուղղակի պատկերավոր եմ խոսում։ Մի խոսքով, վաղը տասնմեկ զերո-զերոյին քեզ կսպասեմ հրթիռադրոմ գնացող տրոլեյբուսի կանգառում։

Բ

Հաջորդ օրը կանգառում հավաքված ուղևորների մեջ անմիջապես աչքի էին ընկնում տարօրինակ արտաքինով երկու տղա։

Կարճահասակը դրել էր լայնեզր պանամա, հագել էր կարճ, մինչև ծնկներն հասնող տաբատ և ինքն իրեն կապկպել ամեն տեսակի ու չափի կաշեփոկերով։ Ամեն մի փոկից կախված էին զանազան առարկաներ՝ թերմոս, ջարդված բռնակով կողմնացույց, ստվարաթղթի վրա սոսնձած քարտեզ ու նույնիսկ… սուլիչ։

Իսկ Մակարը… դե, հիարկե, այդ տարօրինակ ընկերները Խոստիկն ու Մակարն էին։

Իսկ Մակարը ճանապարհորդական մթերապարկի տակ կռացել էր հարցական նշանի պես։ Նեղ տաբատի փողքերը կիպ գրկել էին նրա բարալիկ ու երկար ոտքերը, իսկ գլխարկը ընկել էր աչքերին։

Անցորդները նայում էին այդ տարօրինակ զույգին և հազիվ էին զսպում իրենց ծիծաղը։ Ոմանք էլ բարձրաձայն ենթադրություններ էին անում։

— Գնում են տուրիստական արշավի։

— Երևի ալպինիստներ են։

Խոստիկը այդ պահերին երանի էր տալիս Մակարի երկար հասակին։ Բոլորի ուշադրությունը գրավում էր նա։ Իսկ իրեն՝ Պատիկին, ո՛չ ոք չէր ուզում նկատել։ Դա վիրավորական էր։ Խոստիկը բարձրացավ ու, բարձրաձայն, որ բոլորը լսեն, գոչեց։

— Ջո՜կ, լսիր իմ հրամանը… հերթով դեպի մեքենան՝ մա՛րշ,— և առաջ ընկնելով, քայլեց դեպի մոտեցող տրոլեյբուսը։

Երկար Մակարը շփոթված ետ նայեց։ Ի՞նչ ջոկ։ Մի՞թե իրենք երկուսով չեն։

Բայց նավում ոչ ոք չկար։ Միայն հեռվում, խանութի դռան առաջ կանգնել էին երկու աղջիկ և իրեն նայելով ինչ-որ բան էին ասում ու ծիծաղում։

— Ծիծաղեցե՜ք, ծիծաղեցե՜ք,— վրդովվեց Մակարը,— իսկ կամուրջներն արդեն այրվել են… Երբ մենք խնդիրը կլուծենք, դուք մեզ ծաղկեփնջերով կդիմավորեք… Իսկ ես ոչ մեկից էլ ծաղիկ չեմ ընդունի, դե, գնացեք…

Մակարը նույնիսկ ուզեց «բիթ» ցույց տալ աղջիկներին, բայց խանգարեց Խոստիկի ձայնը.

— Ջո՜կ, լսիր իմ հրամանը…— լսվեց տրոլեյբուսից, ու Մակարը սթափվելով, ընթացքի ժամանակ ցատկեց տրոլեյբուս և բռունցքով սպառնաց ծիծաղող աղջիկներին…

Գ

Հրթիռակայանում տղաները մոտեցան տոմսարկղին, և Մակարը կռանալով մեկնեց դրամը։

— Երկու տոմս տվեք։

Ներսից դրամը ետ տվեցին։

— Ընկեր, սխալվել եք։ Սա մանկական հրթիռադրոմն է։

Մակարը շփոթված նայեց Խոստիկին։ Նրա լուռ հայացքը կարելի էր այսպես թարգմանել. «Այդ ե՞րբ եմ մեծացել, որ ինքս էլ չգիտեմ»։

Պատիկ Խոստիկը նրանից դրամը վերցրեց ու, ոտքերի ծայրերին կանգնելով՝ հազիվ հասավ պատուհանին։

— Մորաքույր, երկու տոմս…

Քիչ անց ընկերները ավելացած դրամով պաղպաղակ գնեցին և քայլեցին դեպի բեռնածածկ





հրթիռադրոմը, ուր հանգստանում էին սիգարի պես երկար, սլացիկ տիեզերական նավերը։

— Տեսնո՞ւմ ես, թե ինչպես է երկար ճամփը մարդուն ամեն անգամ դժբախտության մեջ գցում,— մտածկոտ ասաց Խոստիկը, պաղպաղակի վրա փչելով։

— Ինձ մեծ մարդու տեղ դրեցին,— պարծեցավ Մակարը՝ պաղպաղակի մի մեծ կտոր կուլ տալով։

— Կամաց կեր, թե չէ, մեկ էլ տեսար՝ սառեցիր,— զգուշացրեց Խոստիկը,— իսկ մեծ մարդու տեղ, երբ էլ ասես, կդնեն... Դժվարը մեծին փոքրի տեղ դնելն է։ Տե՛ս, քեզանից մեկ տարով ես մեծ եմ, բայց...— Խոստիկը նորից փչեց պաղպաղակի վրա,— որքա՜ն սառն է... բայց տեսա՞ր, ինձ առաս ուղեցին, իսկ քեզ...

— Իսկ դու թեյ չես խմում, խելոք,— Մակարը չարամտորեն ծիծաղեց,— պաղպաղակի վրա չեն փչում, հո չես ուզում սառեցնել։

— Իմ շունչը տաքացնելու հատկություն ունի,— պատասխանեց Խոստիկն ու զգալով, որ մեծ գլուխ է անում, անմիջապես շարունակեց,— չե՞ս իմանում, չար մարդիկ միշտ էլ տաք շունչ են ունենում... Իսկ քո պես նիհար ու երկարները...

Բայց նա չկարողացավ վերջացնել։ Ռադիոբարձրախոսը սկսեց ինչ-որ բան հաղորդել.

— Ուշադրությո՜ւն... ուշադրությո՜ւն... քաղաքացի ուղևորնե՛ր, խնդրում ենք զբաղեցնել ձեր տեղերը։ Հինգ րոպե հետո հրթիռային նավերը կճանապարհվեն... Ուշադրությո՜ւն... ուշադրությո՜ւն...

— Վազե՜նք։

— Վազենք։

Խոստիկն ու Մակարը վազքով հասան ձախից երկրորդ հրթիռային նավին և տոմսերը ցույց տալով ներս մտան։

Հենց նոր էին զբաղեցրել իրենց տեղերը, երբ մի աներևույթ ուժ ետ հրեց նրանց։

Հրթիռային նավը թեթևակի ցնցվեց։

Ճանապարհորդությունը սկսվել էր... .

Նրանք կտրեցին-անցան Մարսի ուղեծիրը։ Հեռվում երևաց Յուպիտերը, որը իր արբանյակների հետ հանդարտորեն պտտվում էր մութ տիեզերքում։

— Մակար,— շշնջաց Խոստիկը,— Մենք այստեղ վայրէջք ենք գործելու։ Վե՛ր կաց։

Նրանք հավաքեցին իրենց իրերը և մոտեցան ուղեկցորդին։

— Ի՞նչ է պատահել, տղաներ,— հարցրեց նա։— Արդեն ձանձրացա՞ք։

— Ո՛չ... ո՛չ...— առաջ գալով պատասխանեց Մակարը։— Մենք պետք է վայրէջք գործենք։ Դուք մեզ չե՞ք տա տիեզերական զրահհագուստներ։

— Ուզում եք իջնե՞լ։ Կարելի է... կարելի է... Միայն թե, սիրելիս, քեզ համար զրահհագուստ չունենք։ Այ, այս փոքրիկի համար կգտնվի, բայց քեզ համար խոսք չեմ տալիս։

— Ուրեմն ես չպե՞տք է իջնեմ...— վախեցած հարցրեց Մակարը՝ առանց ուշադրություն դարձնելու Խոստիկի երջանիկ ժպիտին։

— Կիջնեք... կիջնեք...— ուզեց նրան հանգստացնել ուղեկցորդը։

— Առանց զրահազգեստի՞...

— Ինչ կա որ... առանց զրահազգեստի։

— Իսկ... Իսկ տիեզերական տարածության մեջ ոչինչ չի՞ լինի։

— Իհարկե՝ ոչինչ... միայն սկզբում մի քիչ վատ կզգաս։ Հետո կուշաթափվես։ Հավանական է, որ նույնիսկ... զոհվես։ Ամեն ինչ հնարավոր է,— մատը վեր ցցելով, ասաց ուղեկցորդն ու աչքով արեց,— դե՛, գնա՛ր, գնա՛ր...

Խոստիկը հեռացավ ուղեկցորդից, իսկ Մակարը մնաց։ Նա սաստիկ հուզված էր։ Խե՜ղճ տղա... Նա պատրաստ էր համաձայնվել Խոստիկի հետ, որ երկար ճամփից, իսկապես, օգուտ չկա։ Նա պատրաստ էր թույլ տալ, որ Խոստիկն անվերջ ծիծաղեր իր հասակի վրա, միայն թե... միայն թե ինքն էլ մի քիչ փոքրանար կամ իր համար էլ զրահազգեստ ճարվեր։

Մինչ այդ, միջմոլորակային նավը վայրէջք գործեց ապառաժներով շրջապատված մի փոքրիկ հովտում։

— Դե, տղանե՛ր, կարող եք իջնել,— ժպտալով ասաց ուղեկցորդը։— Խնդրեմ...

Հրթիռանավի դուռը բացվեց։

Ջրահագգեստ հագած Խոստիկը թևերը պարզեց ու դուրս նետվեց։ Մակարը խեղճ հայացքով նայեց ուղեկցորդին։

— Դու էլ ցատկի՛ր,— բոլորովին լուրջ տոնով հրամայեց ուղեկցորդը։

— Վախենում եմ... առանց ջրահագգեստի...

— Շո՛ւտ արա... շարժվի՛ր... մեր նավը դեռ շարունակելու է իր թռիչքը։ Չե՞ս ամաչում։ Մեծ էլ տղա ես... Վախենում է...

Երկար Մակարը խորը շունչ քաշեց, փակեց աչքերն ու իրեն նետեց տարածության մեջ։

Քիչ հետո նա իր ոտքերի տակ ինչ-որ մի կոշտ բան զգաց, հետո կարծես երազում լսեց միջմոլորակային նավի շարժիչի աղմուկը և կորցրեց գիտակցությունը...



Հեռվից լսվում էր ալիքների մեղմ ծփանքը։ Թույլ քամին իր հետ բերում էր ծովի հաճելի բուրմունքը։ Ճայերը ճախրում էին թափանցիկ, կարծես բյուրեղապակուց ձուլված երկնքում։ Նրանց ճերմակ մարմինները երբեմն քարի պես ընկնում էին դեպի ալիքները ու նորից բարձրանում դեպի կապուտակ եթերը։

Խոստիկը նայեց շուրջը։ Ամեն կողմից երևում էին միայն ջրային անսահման տարածությունները։

Ջրահագգեստը չափազանց ծանր էր ու դժվարացնում էր շարժումները։ Խոստիկը շրջվեց մյուս կողմի վրա ու տեսավ ոտքերը լայն տարածած, ձեռքերը անբնականորեն փռած Երկար Մակարին, որի դեմքին մեռելային գունատություն կար։ Նա պառկել էր աչքերը փակ և կենդանության ոչ մի նշան ցույց չէր տալիս։

Պստիկ Խոստիկը սողալով մոտեցավ Մակարին ու թեքվեց նրա վրա։

— Մակա՜ր...— ձայն տվեց նա։

Ոչ մի պատասխան։

— Մակա՜ր... Մակա՜ր ջան... ուշքի եկ... Մակա՜ր։ Ա՛յ, լսո՞ւմ ես, ասում եմ, որ երկար հասակից լավ բան չկա։ Լսո՞ւմ ես, Մակա՜ր... վե՛ր կաց։ Դու հո չե՞ս մեռել... Ասա, հը՞... մեռե՞լ ես...

Մակարի աչքերը կիսով չափ բացվեցին։ Նա կիսաձայն շշնջաց.

— Մեռել եմ...

Ու նորից փակեց աչքերը։

Խոստիկը շփոթվեց։ Նա չգիտեր, թե ինչ անի։ Մի կերպ հանեց ջրահագգեստը ու ծունկի չոքեց Երկար Մակարի մոտ։

— Մակար... ազնիվ խոսք, իզուր ես մեռել։ Ա՛յ, վեր կաց... ես ամենաչար ու ամենագաճաճ տղան եմ... հա՞... ես լիլիպուտ եմ։ Ուզո՞ւմ ես, թռչկոտեմ մի ոտքի վրա։

Պստիկ Խոստիկը սկսեց մի ոտքի վրա թռչկոտել, ձեռքերով տարօրինակ շարժումներ անել, գոռալ։

Մակարը նորից բացեց աչքերը։

— Ես դեռ չե՞մ մեռել,— կարծես ափսոսալով, հարցրեց նա։

— Ո՛չ... Մակար, դու, կարծես թե, շնչում ես։ Հապա մի խորը շունչ քաշիր։

Մակարը նստեց ու ծանր շնչեց։

— Հիմա հավատացի՞ր, որ չես մեռել։ Ինչքա՜ն լավ ես շնչում։ Նույնիսկ, ես այդպես չեմ կարողանում։

Երկար Մակարը տարօրինակ հայացքով նայեց իր բարյացակամ ընկերոջ վրա։

— Իսկ մենք արդեն տիեզերքո՞ւմ ենք,— վարանած հարցրեց նա։

— Ինչևէ... Տիեզերքում և մեր փոքրիկ մոլորակի վրա։ Ճիշտ է, այստեղ ճայեր կան, բայց մարդիկ՝ բոլորովին։ Ուզո՞ւմ ես գրենք ժայռի վրա մեր անունները։ Թող բոլորը իմանան, որ մենք ենք առաջին անգամ ոտք դրել այս մոլորակը։

Նրանք բարձրացան ամենաբարձր քարաժայռի վրա։ Խոստիկը գրպանից հանեց ջրաներկերը և վրձինով սկսեց ապառաժին գրել։

— Խոստիկ, նավ է մոտենում,— հանկարծ բղավեց Մակարը։

Պստիկը սառեց տեղում։ Վրձինը նրա ձեռքից ցած ընկավ։

Ի՞նչ նավ։ Մի՞թե բացի իրենցից այստեղ ուրիշներ էլ կան։

...Ծովի հայելանման մակերևույթի վրա հանդարտ առաջ էր սահում մի սպիտակ նավակ։ Նրա ետևից, երկու կողմի վրա ծփվում էին ալիքների փրփրուն շերտերը։

— Ինկեներն են,— ուրախ գոչեց Մակարը։— Տեսնես՝ ինչպիսի՞ն են նրանք...

## Ե

Նավակը մոտեցավ ու խարիսխ գցեց փոքրիկ հրվանդանի մոտ։

Ինչ-որ մեկը կանգնեց ու, խոսափողը մոտեցնելով բերանին՝ բարձրաձայն գոչեց.

— Տղանե՛ր... շտապեցե՛ք... շուտով մութը կընկնի...

Խոստիկը նայեց Մակարին այնպիսի մի հայացքով, որ կարծես ուզում էր ասել՝ սրա՞նք որտեղից ծլեցին։

— Տղանե՛ր... շտապեցե՛ք...

Խոստիկն ու Մակարը վազեցին ծովափ։ Ա՛յ քեզ պատմություն... Չէ՞ որ մոլորակը անմարդաբնակ էր...

Անծանոթները թույլ չտվեցին, որ տղաները երկար-բարակ խոսեն և նրանց ձեռքից բռնելով, քաշեցին, բարձրացրին նավակի վրա։

Մոտորը դռռաց, և նավակը տեղից պոկվելով սլացավ հայելանման մակերևույթի վրայով։

Հորիզոնում երևացին ինչ-որ շինություններ, որոնք արագորեն մեծանում էին։

— Ա՛յ քեզ անմարդաբնակ մոլորակ,— հուսահատ գոչեց Խոստիկը,— բախտներս չի բերում։ Երևի հիմա էլ ոչ մի անմարդաբնակ մոլորակ չի մնացել։

Մակարը անտարբերությամբ ուսերը թոթվեց։ Նրան մտահոգում էր միայն մի հարց. ինչպե՞ս եղավ, որ նա առանց գրահազգեստի չզոհվեց տիեզերքում։

Նավակը մոտեցավ ափին։

— Վա՜յ... հրթիռակայանը,— զարմացած բղավեց Մակարը։

Իրոք, հեռվում երևաց հրթիռակայանի հսկայական դաշտն ու գեղեցիկ շենքը։

— Սա ի՞նչ բան է,— տարակուսած հարցրեց Խոստիկը։— Այդ ե՞րբ մենք վերադարձանք Երկիր։

— Է՛հ, փոքրիկ,— ծիծաղեց նավապետը։— Դու շփոթել ես։ Սա մանկական հրթիռակայանն է... Հասկանո՞ւմ ես, ինչպես, ասենք, մանկական երկաթուղին։

Խոստիկը ապշած, այլևս չկարողացավ ոչինչ ասել և թուլացած ընկավ նստարանին։

— Ափսո՜ս խնայողությունները, իսկ ձին...— քիթը վեր քաշեց Երկար Մակարը։

...Երեկոյան, Մոսկովյան փողոցի անկյունում տրոլեյբուսից ցած իջան երկու տղա։ Նրանցից մեկը բարձրահասակ էր, իսկ մյուսը՝ կարճ ու հաստլիկ։ Երկուսի ձեռքին էլ թարմ ծաղկեփնջեր կային։

Անցորդները հիացմունքով նրանց էին նայում ու երևի մտածում. «Ճանապարհորդներ են։ Երևի հեռավոր երկրներից նոր են վերադարձել։ Եվ ինչպիսի՜ ծաղկեփնջերով են նրանց դիմավորել»...։

Լավ է, որ նրանցից ոչ մեկը չէր տեսել, թե ինչպես էին Պստիկ Խոստիկն ու Երկար Մակարը գաղտագողի ծաղկեփունջ հավաքում հրթիռակայանի զբոսայգում, դատարկաձեռն քաղաք չմտնելու համար։



Նկ. Հ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ

# ՍԵԹԻԿՆ ՈՒ ԾՈՒՅԼԻԿԸ



ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈՒԼՑՅԱՆ (Հեքիաթ) Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Կար-չկար՝ մի փոքրիկ տղա կար, անունը Սեթիկ: Սեթիկն ուշադիր, աշխատասեր և ընդունակ երեխա էր: Նա շատ լավ էր սովորում, միշտ դպրոց էր գնում մաքուր հագնված և ամեն տարի գովասանագրով էր փոխադրվում հաջորդ դասարան:

Այսպես Սեթիկը հասավ չորրորդ դասարան:

Բայց ահա չորրորդ դասարանում նրա հետ սկսեցին տարօրինակ բաներ կատարվել: Մի անգամ աշխարհագրության դասին Սեթիկն իր ականջի մոտ ինչ-որ շշուկ լսեց:

— Բարև, Սեթի՛կ,— ասաց ձայնը,— ի՞նչ ես այդպես ականջ դառած լսում այդ չոր ու ցամաք հեքիաթները: Եկ գնանք, ես քեզ ցույց կտամ ծովի հատակը, երկնքի խորքը, ամե՜ն, ամե՜ն բան:

Սեթիկը զարմացած շուրջը նայեց, բայց ոչ ոքի չտեսավ, իսկ ձայնը շարունակում էր նրա ականջի տակ շշնջալ.

— Արի՛, արի գնանք, ես քեզ այնքա՜ն հետաքրքրքիր բաներ կարող եմ ցույց տալ:

— Դու ո՞վ ես, ի՞նչ ես, ինչո՞ւ չես երևում:

— Թե ով եմ ես՝ այդ հետո կիմանաս: Իսկ հիմա նայիր այստեղ:

Հանկարծ Սեթիկի աչքերի առաջ մի հայելի շողաց, և հայելու մեջ Սեթիկը տեսավ Հրազդանի ձորը, մանկական երկաթուղին:

Սեթիկը նայում էր ու աչքերին չէր հավատում. նրան թվաց, թե գնացքով տեղ է գնում ու պատուհանից նայում է դուրս, թավուտ անտառներ, քարից քար խփվող ջրեր, ու կանա՜չ, կանա՜չ, ծաղիկներով լի դաշտեր է տեսնում:

— Հը՞, հիմա տեսա՞ր, հասկացա՞ր, թե ինչ ուժի տեր եմ ես:

Սեթիկն անհանգիստ շուրջը նայեց, բայց ամեն ինչ չքացել էր արդեն:

Այդ օրվանից այդ տարօրինակ, անծանոթ ձայնն սկսեց հաճախակի լսվել:

Սկզբում անծանոթը ուշ-ուշ էր անհանգստացնում Սեթիկին: Հետո սկսեց ավելի ու ավելի հաճախ այցելել նրան, ամեն օր նույնիսկ, օրը մի քանի անգամ:

— Տես, ի՜նչ լավ է դրսում,— ասում էր նա,— ծառեր, ծաղիկներ, սառը գետակ, մրգերով լի այգիներ, գույնզգույն քարեր, խխունջներ, թիթեռներ... Թո՛ղ դասերդ, գնանք, ես քեզ ման կածեմ այդ գեղեցիկ վայրերում: Մի՞թե գլուխդ չի ցավում ամեն օր այստեղ, այս փակված սենյակում:

Խոսում էր այսպես աներևույթ ձայնը, Սեթիկի սիրտը տակն ու վրա անում ու հեռանում: Ջղայնանում էր Սեթիկը, բայց իզուր...

Մի օր էլ, երբ Սեթիկը դպրոցից եկավ, նախաճաշեց և նստեց դասերը պատրաստելու, հանկարծ իր կողքին լսեց նույն անծանոթ ձայնը.

— Բարև, Սեթի՛կ, հյուր չե՞ս ընդունի:

— Ես քեզ չեմ ճանաչում,— ասաց Սեթը,— ո՞վ ես դու, ինչո՞ւ ես թաքնվում վախկոտի նման:

— Ե՞ս եմ վախկոտը: Ուզո՞ւմ ես ստիպեմ քեզ, որ կատարես իմ բոլոր քմահաճույքները...

— Բայց ես ուզում եմ տեսնել քեզ...

— Դե լավ, որ այդպես է, փակիր աչքերդ...

Սեթիկն աչքերը փակեց: Լսվեց մի տարօրինակ թշշոց, ապա մի բարձր քրքիջ:

Սեթիկն աչքերը բաց արեց և տեսավ սենյակում իր նման մի տղա է կանգնած:

— Դե եկ, ծանոթանանք,— ասաց տղան ձեռքը մեկնելով,— ես Կիլյուծն եմ, իսկ դու Սեթիկն ես, գիտեմ, մենք լավ ընկերներ կլինենք:

«Այս ի՞նչ տարօրինակ անուն ունի սա», մտածեց Սեթիկը, բայց ոչինչ չասաց:

— Բայց ինչո՞ւ էիր դասերս խանգարում,— հարցրեց նա:

— Գիտե՞ս, Սեթիկ,— ասաց Կիլյուծը,— տեսա քեզ ու շատ հավանեցի: Մտածեցի, որ դու ինձ լավ ընկեր կլինես:

«Դե ի՞նչ կա որ,— մտածեց Սեթիկը,— կարգին տղա է երևում, կարելի է ընկերություն անել»: Ու նրանք մտերիմ ընկերներ դարձան: Սեթիկն այնքան էր հրապուրվել Կիլյուծով, այնքան էր կապվել նրա

հետ, որ հնազանդ, նույնիսկ հաճույքով կատարում էր նրա բոլոր ասածները:

Դասի ժամանակ կամ տանը դաս պատրաստելիս հանկարծ հայտնվում էր Կիլյուծը, զրուցում նրա հետ և մեկ էլ նրան էր նայում մի այնպիսի գրավիչ հայացքով, որ Սեթիկի քունն իսկույն տանում էր:

Դասամատյանում հայտնվող «երկուսները», ճիշտ է, սկզբում սկսեցին անհանգստացնել Սեթիկին: Նա երբեմն նույնիսկ լաց էր լինում ու որոշում չլսել իր նոր ընկերոջը, բայց կրկին հայտնվում էր Կիլյուծը և համոզում նրան:

Մի օր դասամիջոցին Կիլյուծը մոտեցավ Սեթիկին և սկսեց պատմել, թե ինչպիսի հրաշալիքներ կան Հրազդանի ձորում, և առաջարկեց գնալ այնտեղ:

Սեթիկն ուզում էր առարկել նրան, բայց Կիլյուծը գրպանից հանեց հայելին, մոտեցրեց Սեթիկի դեմքին: Սեթիկի աչքերն ակամայից փակվեցին: Մեկ էլ աչքերը բացեց ու տեսավ, որ գտնվում է ձորում, մի դեղձենու տակ:

— Պառկենք այստեղ,—ասաց Կիլյուծը և մեկնվեց դեղձենու ստվերում:

— Հապա դեղձ չուտե՞նք,— զարմացավ Սեթիկը:

— Հետո կուտենք, պառկիր, քնենք, մի քիչ հանգստանանք:

Սեթիկն ստիպված ենթարկվեց, պառկեց նրա կողքին ու քնեց...

Երբ նա արթնացավ, արևն արդեն թեքվում էր դեպի արևմուտք:



— Կիլյո՛ւծ, ա՛յ Կիլյուծ, ուշ է, վեր կաց, մի քիչ լողանանք, դեղձ ուտենք ու գնանք տուն...

— Քնիր, դեռ ժամանակ շատ կա:

Եվ նորից քնեցին:

Դրանից հետո նրանք հաճախ էին գալիս այստեղ, և միշտ էլ Կիլյուծն ստիպում էր Սեթիկին քնել: Սեթիկն ուզում էր լողալ, խխունջներ ու գույնզգույն քարեր հավաքել, թիթեռներ ու բզեզներ որսալ, դեղձ ուտել, բայց Կիլյուծը նրան միայն քնեցնում էր:

Մի օր էլ աղմուկով ձորը մտան մի խումբ պիոներներ: Ջննելով յուրաքանչյուր քարն ու թուփը, նրանք հանկարծ հայտնվեցին քնած Սեթիկի ու Կիլյուծի գլխավերևում: Սեթիկին նրանք իսկույն ճանաչեցին:

— Իսկ ո՞վ է այն մյուսը,— տարակուսած հարցրեցին նրանք իրար:

— Հիմա կիմանանք,—ասաց բնագիտության ուսուցիչը:

Ուսուցիչն ավազ ջոկատավարի ականջին ինչ-որ բան շշնջաց: Նրանք երկուսով մոտեցան քնած Կիլյուծին ու նրա գրպանից հանեցին մի հայելի ու սպիտակ թուղթ, որի վրա հատ-հատ ու խոշոր տառերով գրված էր. «Կիլյուծ»:

— Ահա՛,—ասաց ուսուցիչը,—այս հայելիով է նա գրավում թուլակամ երեխաներին, հմայում է, խաբում, ինչպես Սեթիկին:

— Փշրե՛նք հայելին,— միաձայն ասացին պիոներները:

— Հայելին ինքնիրեն կփշրվի,— ասաց դասատուն.— հապա, Պետիկ, տուր ինձ հայոց լեզվի դասագիրքդ:

Դասատուն վերցրեց դասագիրքը, բաց արեց այն էջը, որտեղ գրված էր՝

«Կարդա, ա՛յ իմ խելոք մանուկ,
Կարդա, գրիր տարին բոլոր...»

Հենց որ գրքի արտացոլումն ընկավ հայելու մեջ, լսվեց մի ուժեղ ճայթյուն և հայելին փշուր-փշուր եղավ: Նույն վայրկյանին լսվեց Կիլյուծի հուսակտուր ճիչը: Արթնացավ նաև Սեթիկը: Մինչ Սեթիկը կանգնած էր ամոթահար ու գլխիկոր, Կիլյուծը ձեռքը տարավ գրպանը, համոզվեց, որ հայելին չկա, քամու նման փախավ, կորավ:

Երբ ուսուցչի հետ բոլորը տուն էին վերադառնում, Արամը, որ ձեռքին բռնել էր «Կիլյուծ» մակագրությամբ թուղթը, ասաց.

— Կիլյո՛ւծ: Ի՜նչ տարօրինակ անուն է, ես առաջին անգամ եմ այսպիսի անուն լսում:

— Իսկ դու մյուս կողմից կարդա,—խորհուրդ տվեց դասատուն,—այն ժամանակ կըհասկանաս:

Երեխաները հավաքվեցին Արամի շուրջը. զարմացած մոտեցավ նաև Սեթիկը:

Արամը հակառակ կողմից հատ-հատ կարդաց՝ ծ ո ւ յ լ ի կ:

# ՄԵՐ ԱՐԲԱՆՅԱԿԸ

Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

— Եկե՛ք, եկե՛ք, Սոս ու Պերճ,
Եկե՛ք, Արտո՛, Հմայա՛կ,
Գնանք բակի ծյունի մեջ
Շինենք ձնե «արբանյակ»:

Անտենաներն՝ էլ ահա
Այս ձողերից կշինենք.
Դուք էլ՝ Խորենն ու Վահան,
Ձեր շնիկը կբերեք:

Թող Լայկայի փոխարեն
«Արբանյակը» մեր ձնե
Ձեր Բոբիկին հիմա էլ
Դեպի երկինք թռցնի:

Չվախենաս, չի՛ սատկի,
Նա ցած կիջնի մեր բակում
Ու բոլորիս կպատմի,
Թե ինչեր կան երկնքում:



# ԹԵՅ

(Լիտվական ժողովրդական)

Առավ հայրիկը հրացանն ուսին,
Գնաց մոտակա անտառը որսի:
Թփի արանքից մի զարկով ուժգին
Սպանեց օդում թռչող սարյակին:
Սայլը լծեցին որդիներն խսկույն,
Խփված սարյակին երգով բերին տուն:
— Կրակ վառեք շուտ, սիրելի քույրեր,
Մեզ մոտ պիտի գան բազմաթիվ հյուրեր
Մայրը թռչունը խորովեց արագ.
Սեղան բացեցին կանաչ կաղնու տակ:
Եվ քույրերը դեռ միսը չբերած՝

Հյուրերը եկան յոթ օրվա սոված,
Եկան, նստեցին պաշտոնի կարգով,
Ճաշը գովեցին խոսքով ու երգով...

Կերա՜ն... Վերջ չկար մսին ու հացին,
Երկու տակառ էլ գինի խմեցին:

Փոխադր. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ



Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

# Աղյուսն ու մուկը

ԳԵՎՈՐԳ ԳԵՂՈՒՆԻ

Մի խիստ ձմեռ
Մուկը նեղն էր
Եվ գնաց նա աղյուսի մոտ,
Աղաչեց ու ընկավ ձեռ-ոտ.
— Թե մի քիչ ինձ հարգում ես դու,
Բո փչակում ինձ էլ տեղ տուր,
Մինչև անցնեն բուքն ու ձյունը,
Ես կգնամ նոր իմ տունը:
— Արի, արի, ա՛յ հարևան,
Ո՞նց քեզ չօգնեմ այսպես օրվան.

Ու տարավ նա մկանն իր տուն,
Շահեց, պահեց մինչև գարուն:
Բայց մկնիկը հենց հեռացավ,
Պատիվ հարգանքը մոռացավ.
Երբ որ իր մոտ եկավ քեռին,
Նա բամբասեց խեղճ աղյուսին.
— Բա չե՞ս ասում, այդ աղյուսը
Թալանել է ողջ անտառը,
Էլ չի թողել ընկույզ, զկեռ,
Ինձ էլ հետը պահում էր դեռ:



# ԴԵՂԻՆ ՍԵԽԸ

(Ադրբեջանական հեքիաթ)

Կար-չկար՝ մի գյուղացի կար։ Այդ գյուղացին մի փոքրիկ բոստան ուներ։ Բոստանում հասել էին սեխերը, և նրանց մեջ աչքի էր ընկնում մի դեղին սեխ, որի անուշ հոտը հեռվից-հեռու հարբեցնում էր մարդու։

Գյուղացին որոշեց այդ սեխը պահել խանի համար, հույս ունենալով փոխարենը մի նվեր ստանալ։

Բայց արի տես, որ այնպես չեղավ, ինչպես մտածում էր գյուղացին։

Մի անգամ խանը գնաց որսի։ Երբ նա անցնում էր գյուղացու բոստանի կողքով, մի անուշ հոտ առավ։ Ձիուց իջավ թե չէ, տեսավ առաջը մի դեղին սեխ է ընկած։ Խանը պպզեց սեխի մոտ և ուզեց քաղել, բայց տեսավ երկու-երեք օր էլ պիտի մնա, որ լավ հասնի։ Նա կանչեց գյուղացուն ու հրամայեց.

— Այս սեխը երեք օր պահիր, իսկ չորրորդ օրը բեր ինձ։

Բոստանչին խոր գլուխ տվեց, իսկ խանը նստեց ձին ու քշեց-գնաց։

Գյուղացին գնաց տուն և տղային ասաց.

— Ալիյար ջան, ցերեկը դու պահիր դեղին սեխը, գիշերը՝ ես. էսպես հերթով կնայենք, մինչև հասնի, տանեմ տամ խանին։

Ալիյարը շատ էր ուզում այդ հրաշալի սեխի համը տեսնել և, երբ իմացավ, որ հայրը որոշել է տանել խանին, շատ բարկացավ։ Բայց ի՞նչ կարող էր անել. գնաց բոստանը պահեց, մինչև արևը մայր մտավ, և հայրը եկավ իրեն փոխարինելու։ Իսկ առավոտյան հայրը տուն եկավ ու նորից որդուն ուղարկեց բոստան։

Այսպես, անցավ երկու օր։ Վերջին օրը Ալիյարի հերթն էր։

Թող նա այնտեղ բոստանը պահի, իսկ ես ձեզ կպատմեմ սև ականջներով մի նապաստակի մասին։ Այդ նապաստակը շատ էր սովածացել. վազ տվեց, մտավ բոստանը և բոլոր սեխերի մեջ ջոկեց հենց այդ դեղինը. ո՜նց էլ իսկույն հասկացավ, որ մնացած բոլոր սեխերը դրա մոտ ոչինչ են։ Եվ նա ախորժակով վրա պրծավ սեխին։ Մեկ էլ

Ալիյարը տեսավ, ինչ, սև ականջներով մի նապաստակ եկել, անուշ է անում դեղին սեխը։ Քարը վերցրեց ու շպրտեց նրա վրա։ Նապաստակը թողեց ու փախավ։ Ալիյարը նայեց, տեսավ, որ նապաստակը մի քանի տեղից սեխը կրծոտել է։

«Հիմա այս սեխը ոչ խանին հասավ, ոչ՝ նապաստակին, — ասաց նա ինքնիրեն, — ավելի լավ է ես ինքս ուտեմ»։

Նա սեխը կերավ, եկավ տուն ու հորն ասաց.

— Հայրիկ, երբ ես ննջում էի, սևականջ նապաստակը մտավ բոստանը և դեղին սեխը կերավ։

Գյուղացին վազեց բոստանը, տեսավ դեղին սեխը չկա, գնաց խանի մոտ և ընկավ նրա ոտքերը.

— Ո՜վ բարեգութ խան։ Տղաս ուշք չի դարձրել, և սևականջ նապաստակը եկել, դեղին սեխը կերել է։ Մի բարկացիր և ներիր մեզ։

Այդ լսելով, խանը այնպես կատաղեց, որ հրամայեց գլխատել Ալիյարին։

Գյուղացին շատ աղաչեց-պաղատեց խանին, որ խնայի տղայի կյանքը, բայց խանը հրամայեց դուրս անել նրան։ Խանի ծառաները գյուղացուն ծեծելով վռնդեցին պալատից։

Դժբախտ ծերուկը արնոտված երեսով ու ջարդված գլխով վերադարձավ տուն։

Հարևանները հավաքվեցին նրա գլխին ու սկսեցին հարց ու փորձ անել։

Գյուղացին պատմեց, ինչ որ եղել էր։ Երբ Ալիյարը լսեց, որ խանը պատրաստվում է գլխատել իրեն, գույնը գցեց, կամաց դուրս եկավ տնից և գնաց բոստանը։ Նա նստեց այնտեղ, որտեղ աճել էր դեղին սեխը, և սկսեց դառնորեն լալ։

Մեկ էլ նրա մոտ վազեց սևականջ նապաստակը։ Ալիյարն ուզեց խփել նրան, բայց նապաստակը մարդկային ձայնով ասաց.

— Ինչո՞ւ ես լալիս դու, Ալիյա՛ր։

— Բա ինչ անեմ, լաց չլինեմ, — պատասխանեց Ալիյարը։ — Հայրս դեղին սեխը պահել էր խանի համար, իսկ դու եկար, կրծոտեցիր։ Եվ հիմա խանը բարկացել է, ուզում է ինձ գլխատել։

— Մի վախենա, խանը չի գլխատի քեզ, — սկսեց սիրտ տալ նրան նապաստակը։ — Ես հենց այսօր կմտնեմ խանի այգին և, ինչ որ կարող եմ, կուտեմ, իսկ ինչ չեմ կարող՝ կոտորեմ։ Խանը կզբաղվի իր այգիով և քեզ կմոռանա։ Իսկ հետո կտեսնենք։

Գիշերը նապաստակը մտավ խանի այգին, խաղողներից ամենալավերը կերավ, մնացածը պոկոտեց, թափեց ցած, հետո կրծոտեց բոլոր վազերը և փախավ-գնաց։

Առավոտյան խանի այգեպանը եկավ, տեսավ ինչ. այգին ամբողջապես ավերված է, ու մեկ էլ աչքովն ընկավ սևականջ նապաստակը, որ փախչում էր այգուց։ Նա իսկույն վազեց խանին հայտնելու։

Եկավ ինքը՝ խանը և տեսավ, որ ամենալավ խաղողները կամ կերել են, կամ թափթփել գետնին։



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Խանը սաստիկ բարկացավ և հրամայեց.

— Թող անմիջապես որսորդները շներն առնեն ու հետքերով գնան և ինչ նապաստակ էլ որ հանդիպի՝ խփեն, կոտորեն բոլորին։

Որսորդները գնացին նապաստակի հետքերով, խփեցին մի քանի շլդիկների, ետ դարձան ու ասացին.

— Այն սևականջ նապաստակը, որ ավերել է այգին, չգտնվեց։

Այստեղ խանը կատաղեց.

— Ես ինքս նրան կխփեմ։

Նա նստեց ձին և քշեց դաշտը։ Երկու օր խանը փնտրեց, բայց չհանդիպեց նապաստակին։ Նա սաստիկ հոգնել էր, գնաց մի սաղարթախիտ ծառի մոտ, ձիուց իջավ, պառկեց շվաքում ու քնեց։

Տեսնելով, որ խանը քնած է, սևականջը վազ տվեց Ալիյարի մոտ։

— Արի գնանք ինձ հետ, — ասաց նրան։— Ես բաց կանեմ, կճանկռտեմ խանի աչքերը, իսկ դու երկու բուռ ավազ կցանես նրա երեսին։ Խանը կկուրանա և մեզ հանգիստ կթողնի։

Ինչպես ասին նրանք, այնպես էլ արին։

Խանը զույգ աչքերով կուրացավ և մենակ մնաց դաշտում։

Վայրի գազաններն ու թռչունները թափվեցին նրա վրա ու ծվեն-ծվեն արին։

Այսպես, Ալիյարն ու նապաստակը փրկվեցին մահից և ժողովրդին ազատեցին խանի բարկությունից։

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

ՄԵԴԵԱ ԿԱԽԻՁԵ
(Վրացի երիտասարդ բանաստեղծուհի)

# ԽԵՑԳԵՏԻՆՆԵՐ





(Առակ)

Ինչպես եղավ, գարնան մի օր
Խեցգետիններն հանդիպեցին,
Մեկը՝ ջահել, մյուսն՝ ալևոր։
Ծերուկն ասաց իր ցեղակցին.
—Ո՞վ ես, ի՞նչ ես, արի մոտիկ։
Շենք-շնորհքին հլա մտիկ։
Հա՛, հա՛, հա՛, հա՛, խե՛ղճ հողեղեն,
Ա՛յ թե վրադ կծիծաղեն։
Ի՞նչ ես ետ-ետ գնում այդպես,
Կարգին քայլել դու չգիտե՞ս։

Որպես համեստ մի խեցգետին,
Գլուխ տալով մինչև գետին՝
Ջահելն ասաց.
— Ես շատ եմ գոհ,
Որ հավասար եղբայրն եմ քո։
Ո՞վ չգիտե, որ գանձ է մի
Լավ խորհուրդը բարեկամի։
Բայց թե ինչպե՞ս
Ուղիղ քայլել ծուռ ոտքերով,
Ի՛նքդ փորձիր,
Որ ես էլ գամ քո հետքերով։

# ԵՐԿՈՒ ՁՈՒԿ



(Առակ)

Իր զորության վրա վստահ՝
Ձուկը հսկա
Բռնեց մի ձուկ թույլ ու փոքրիկ։
— Ա՛յ խաղալիք,
Մի՞թե քեզ պես ձկներ էլ կան,—
Ասաց հսկան,—
Պարապ-սարապ ես մնացել,
Մինչև հիմա չե՞ս մեծացել։
Ո՞նց կուլ տամ քեզ.
Դու կկորչես
Բերանիս մեջ,
Մի պատառ էլ չես լինի, խե՛ղճ։

Ջուր էր դառել փոքրի լեղին,
Բայց պատասխան տվեց տեղին.
— Եթե հիմա քեզ կեր դառնամ,
Ասա՛, էլ ե՞րբ ես մեծանամ։

Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# Ջութակահարը

ԲՈՐԻՍ ԶԱԽՈԴԵՐ

Մենք ունեինք մի հարևան,
Ջութակահար էր այդ տղան.
Ջութակահար էր այնպիսի,
Որ ոչ մի մարդ չէր ցանկանա
Նրան լսի...

Մեզ մոտ եկավ մի անգամ նա՝
Արդեն ծանոթ մեզ այդ տղան.
Սովորում էր ինչ—որ տեղում
Եվ ուզում էր նա անպայման,
Որ երաժիշտ դառնա կյանքում:

Եւ խնդրեցի, որ այդ օր գա
Ինձ հետ մի քիչ ֆուտբոլ խաղա:
Մերժեց, չեկավ, իհարկե, նա.
—Չեմ կարող գալ, գիտեք է՛լի
Զբաղված եմ՝
Պատրաստվում եմ ես ելույթի:

Ի՞նչ սպասես
Մի այդպիսի երաժշտից,
Խուսափում է երբ գնդակից:

Իր ջութակի վրա, գոնե,
Կարողանար, օ՛, այդ տղան
Մի գեղեցիկ, մի որևէ,
Սրտի ուզած բան նվագել:



Առավոտից մինչ իրիկուն
Հիմար բաներ էր կրկնում:
Վերադարձել, գալիս ես տուն.
Եվ դեռ հեռվից գիտես, էլի,
Որ դարձյալ նա է նվագում.
— Տիլի՛—պիլի՛, տիլի՛—պիլի՛:

— Այնտեղ ի՞նչ է նա սղոցում,—
Մայրիկիս եմ ես հարցնում:
— Ա՛յ, դու էլ բան ասացիր, հա՛,
Ի՞նչ սղոցել,—սաստում է նա,—
Նվագում է տղան գամմա:

Հետո մայրս քնքշանքով լի,
Բացատրում է,
Որ հարկավոր է վարժություն,
Որ ես ինքս էլ կարող էի
Զբաղվել մի կարգին բանով,
Որ խենթորեն և օրնիրուն
Չտարվեի



Այդ ֆուտբոլով,
Որ իբր թե առանց ուսման,
Շատ դժվար է և անհնար
Դառնալ թեկուզ ջութակահար:

Եվ հանուն այդ գամմաների,
Շատ անգամ եմ նստել դասի.
Դրա համար այդ տղային
Ես ցույց կտամ... թող սպասի:

* * *

Անցան օրեր, և Մոսկվայի
Սյունազարդ ու մեծ դահլիճում
Մի նոր համերգ պիտի լիներ՝
Ինձ էլ էին տոմսակ տվել:

Լսում էի ես խիստ տարված,
Գրավիչ էր համերգն այնքան.
Վերջանում էր, մեկ էլ հանկարծ
Բեմ է գալիս ինքը՝ Տոլկան:

Սև կոստյում էր նա հագել
Կանգնել բեմում լուսաշող
Եվ պատրաստվում էր սկսել
Գամմաներն իր սիրտ մաշող:

Ցնցվեցի ես նստած տեղում
Օ՛, ինչպես էր սիրտս դողում:
— Վեր կաց փախչենք, ա՛յ սիրելիս,—
Դիմեցի ես հարևանիս,—
Էլ լավ երգի չունենաս հույս,
Գամմաները որ սկսեց,
Չի վերջացնի էլ մինչև լույս:

— Լսե՛ք,—ասաց մեկն ետևից:—
Չէի ելել դեռ իմ տեղից,
Երբ լռություն տիրեց խորին.
Մեկն իր երգով, թե նվագով
Կախարդել էր ներկաներին:

Ջութակահա՞րն էր այդ միթե.
Չեմ հավատում աչքերիս դեռ
Եվ նայում եմ ուղիղ նրան.
Այո, նա՛ է որ կա.
Նվագում է ինքը՝ Տոլկան:

Նվագում էր նա համարձակ
Լռության ծով էր չուրջն ասես.
Իսկ ջութակը մեղմ, քաղցրաձայն,
Գեղգեղում էր սոխակի պես:

Երբ որ նվագը խոր լռեց,
Նոր սթափվեց ծով դահլիճը,
Փոթորկահույզ ծափահարեց:
Հետո լսվում է իմ նիշը.
— Տոլկա՛, ինչո՞ւ նվագեցիր
Դու այդքան քիչ...

Հարևանս դիմում է ինձ.
— Ի՞նչ է, ծանո՞թ ես դու նրան:
— Դե, իհա՛րկե.
Ընկերներ ենք և մի բակից
Ես և Տոլյան...

. . . . . . . . . . . . . . .

Վերադարձել, տուն ենք գալիս,
Տոլյան ուրախ և սիրալիր
Համաձայնվում, թույլ է տալիս,
Որ ես տանեմ ջութակը իր:

Թարգմ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ





Նկ. 1. Մարիամը, Թամարան ու Մարգարիտը լվացվում են: Չէ՞ որ խոհանոց պետք է մտնել մաքուր ձեռքերով:

# Համեղ է սեղանը

Երեխաներ, դուք, իհարկե, օգնում եք մայրիկին տնային գործերում. հավաքում եք ձեր անկողինը, փայտ եք կոտրում կամ ջուր եք բերում, հետևում եք ձեզնից փոքր եղբայրներին ու քույրերին, որ նրանք խելոք լինեն ու մայրիկին չբարկացնեն, կարգի եք բերում սենյակը, հավաքում թափթփված իրերը...

Բայց ձեզնից շատերը երևի չեն էլ մտածել, որ մայրիկը խոհանոցային գործերում էլ օգնության մեծ կարիք ունի:

Պատկերացրեք, որ ձեր տուն հյուրեր են եկել, իսկ մայրիկը, փոխանակ նրանց հետ զբաղվելու, խոհանոցում գործ է անում: Նա շատ է շտապում, և օգնող էլ չկա: Իսկ այդ ժամանակ դուք անգործ նստել եք հյուրասենյակում և ուշադրությամբ լսում եք, թե ինչ են խոսում մեծերը: Բայց մի՞թե դա ձեզ այդքան հետաքրքիր է, մի՞թե դուք չգիտեք, որ լավ չէ մեծերի խոսակցությանը խառնվել: Իսկ եթե գնայիք խոհանոց, օգնեիք մայրիկին...

Դե, իհարկե, շատ լավ կլիներ. մայրիկը շուտ կվերջացներ, կգար հյուրերի մոտ, ինքն էլ կմասնակցեր զրույցին...

«Իսկ ի՞նչ կարող ենք անել խոհանոցում,— կհարցնեք դուք,— չէ՞ որ մենք կերակուրներ կամ խմորեղեն պատրաստել չգիտենք»:

Բայց չէ՞ որ կարելի է սովորել, երեխաներ: Մի ժամանակ ձեր մայրիկն էլ չի իմացել այդ բոլորը և սովորել է ու վատ չի սովորել. դուք երևի կհաստատեք դա, կասեք, որ մայրիկի եփած կերակուրները ամենից համեղն են:

Եթե դուք ցանկանաք սովորել «խոհարարական արվեստը», մայրիկը մեծ սիրով ձեզ կօգնի, խորհուրդներ կտա:

Իսկ Երևանի Իսահակյանի անվան դպրոցի 7-րդ «ա» դասարանի պիոներները որոշեցին այդ «արվեստին» տիրապետել ամբողջ ջոկատով, որոշեցին իրենց հավաքույթը նվիրել ընթրիքի սեղանի պատրաստմանը: Որոշեցին ու ոգևորված անցան գործի: Ճարեցին զանազան կերակուրներ, խորտիկներ ու թխվածքներ պատրաստելու մասին գրքեր, իրենց համար կարեցին սպիտակ գոգնոցներ և գլխաշորեր, իսկ դասղեկ ընկեր Ջահանյանն ու ավագ ջոկատավար ընկեր Գալստյանը սիրով օգնեցին նրանց:



Նկ. 2. —Ամեն ինչ պետք է իր տեղում լինի, նույնիսկ գլխաշորը,— ասում է Ռիման (աջից) Թագուշին:

Ահա և հավաքույթի օրը: Թագուշն ու Մելանիան դասղեկի հետ գնացին շուկա, իսկ մյուսները տներից բերեցին ափսեներ, ամաններ, պատառաքաղներ և սեղանի այլ պարագաներ:

... Պիոներական սենյակում հավաքված ուսուցիչները հետաքրքրությամբ դիտում էին յոթերորդ դասարանցիների աշխատանքը: Ամբողջ ջոկատը բաժանվել էր երկու օղակի: Օղակները մրցում էին, ո՞վ ավելի արագ ու համեղ կպատրաստի, ո՞ւմ սեղանը ավելի լավը կլինի: Վերջապես ամեն ինչ պատրաստ է: Ռոզան, Գոհարիկը, Մերին, Սաթիկը, Իրան սարքում են սեղանները, Լաուրան, Մարիամը, Ռիման, Հռիփսիկը, Ժենյան թեյ են լցնում: Բոլորը զբաղված են ու մի քիչ էլ հուզված. տեսնես մեծերը գոհ



Նկ. 3. Զարեկը (ձախից) և Սուսաննան [illegible] են: Տեսնես ինչպե՞ս կստացվի աղցանը:

*Լուսանկարները՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ*

## Պատրաստ է...



Նկ. 4. Հիմա Գոհարը կամի: Նրա դեմքից երևում է, որ սալաթը համեղ է:

կմնա՞ն իրենց պատրաստած ընթրիքից:

Աղջիկների միջից դուրս է գալիս Ազատուհին ու մոտենալով ուսուցիչներին, թեթևակի շիկնելով, ասում է.

— Համեցե՛ք սեղանի մոտ, ընթրիքը պատրաստ է:

Բոլորը մոտենում են: Սեղանին դրված են անուշահոտ համեմունքների բուրմունքով զանազան խորտիկներ, խմորեղեն, սալաթներ... Հաճելի է ընթրել: Սեղան են նստում և իրենք՝ սեղան պատրաստողները: Չէ՞ որ սեփական ձեռքերով պատրաստածը ավելի համեղ է լինում:

Ընթրիքի ժամանակ Հռիփսիկը, Սուսաննան ու Սաթիկը պատմում են ընկերներին, թե ինչպես պետք է պահել սեղանի մոտ, ինչպես օգտվել սպասքի պարագաներից, թե ինչպիսի խորտիկներ կարելի է պատրաստել այս կամ այն մթերքից:

Ընթրիք-հավաքույթն ավարտված է: Բոլորը գոհ են: Աղջիկների պատրաստած սեղանը և՛ գեղեցիկ էր, և՛ ախորժալի: Չէ՞ որ նրանք մեծ սիրով ու ոգևորությամբ էին աշխատում, յուրաքանչյուրն ուզում էր մի նոր բան սովորել:

Այժմ նրանք վստահ կարող են օգնել իրենց մայրիկներին:

Նկ. 5. Ահա և սեղանը պատրաստ է: Թագուշը թեյ է մատուցում դասղեկ ընկեր Զաճանյանին: Նա կարծես գոհ է, բայց իր կարծիքը երևի ընթրիքից հետո կհայտնի:






Արաբական հին հեքիաթներից մեկում Ալի-Բաբա անունով մի աղքատ փայտահատ անտառում կանգնել էր մի բարձր ծառի մոտ և այն է, ուզում էր կացինը բարձրացնել ծառը կտրելու համար, երբ հանկարծ ձիերի դոփյուն լսեց: Նա տեսավ, որ դեպի իր կողմն է գալիս զինված ձիավորների մի խումբ: Վախեցած Ալի-Բաբան արագ ծառը բարձրացավ և թաքնվեց ճյուղերի մեջ:

Մի քանի րոպե հետո ձիավորները հասան այնտեղ, ուր քիչ առաջ կանգնել էր փայտահատը: Նրանք ձիուց իջան, թամբերից ցած բերին ծանր պարկերը և մոտեցան ծառի մոտ գտնվող ժայռին: Ժայռի վրա մի փոքրիկ երկաթե դուռ կար: Դուռն այնպես էր ծածկված խոտերով ու մացառներով, որ ոչ ոք գլխի չէր ընկնի նրա գոյության մասին:

Առջևից գնացող մարդը կանգնեց դռան մոտ և բարձր գոռաց.

—Սիմսիմ, դուռը բաց:

Ժայռի միջի դուռը բացվեց, և հենց որ մարդիկ ներս մտան, իսկույն փակվեց:

Շատ էր անցել, թե քիչ, ձիավորները դուրս եկան ժայռից, նստեցին ձիերը և քառատրոփ հեռացան:

Ալի-Բաբան այս որ տեսավ, ցած իջավ իր թաքստոցից և վազեց ժայռի մոտ:

«Իսկ ի՞նչ կլինի, երբ ես էլ ասեմ. Սիմսիմ, դուռը բաց.— մտածեց նա,— դուռը կբացվի, թե չէ»: Վերջապես սիրտ արեց և ամբողջ ձայնով մեկ գոռաց.

— Սիմսիմ, դուռը բաց:

Դուռն անմիջապես բացվեց, և Ալի-Բաբան մտավ ներս: Դա մի հսկայական քարայր էր, մի քանի մեծ սենյակներով, որոնք լեփ-լեցուն էին թանկագին գանձերով:

Ստորերկրյա շտեմարաններից մեկը մտնելով, Ալի-Բաբան, ստիպված աչքերը փակեց: Ամեն ինչ այնտեղ շողշողում էր ու փայլում: Գետնի վրա լցված էին ոսկե և արծաթե դրամների կույտեր, պատերի թա-





















# Պետրոս Առաջինը և հայ վաճառականը

Պետրոս Առաջինը ռուս երիտասարդներին ուղարկում էր Եվրոպա՝ արհեստներ և գիտություններ սովորելու: Ինքն էլ գործունյա և աշխատասեր մարդ է եղել և բանվորի անվան տակ գնացել է արհեստներ սովորելու: Շատ ավանդություններ ու զրույցներ են հորինվել նրա մասին: Հայ ժողովրդի մեջ տարածված զրույցներից մեկը գտնվում է Հայաստանի Մատենադարանի արխիվում: Զրույցը 1850 թըվականին հավաքել և գրաբար գրի է առել բանահավաք Ասլան Աթաբեկյանը:

* * *

Ռուսաց Պետրոս Առաջին թագավորը ծպտված գնում է Հոլանդիայի մայրաքաղաքը՝ նավաշինություն և այլ արհեստներ սովորելու:

Մի օր Պետրոսը դուրս է գալիս տանից և գնում է շուկա: Ճամփին նրան է մոտենում մի հոլանդացի և ասում.

— Հետևեցե՛ք ինձ:

Պարզվում է, որ կառավարության մարդը գաղտնի հետևում է նրան, որ ձերբակալի: Նա Պետրոսին տանում հանձնում է քաղաքի բանտապետին և ինքը հեռանում:

Պետրոսին տեղավորում են բանտի մի առանձին խցում: Նա գնում-գալիս և մտածում է, թե ո՞վ է իրեն մատնել, ինչո՞ւ են իրեն բանտարկել: Հետո մտածում է՝ ո՞նց անի, որ ազատվի:

Այդ պահին, բանտի լուսամուտի տակից անցնում է բարձրահասակ, թիկնավետ, սև մազերով և անծանոթ հագուստով մի տղամարդ: Պետրոսը նկատում է նրան, բախում լուսամուտը և ձեռքով կանչում է իր մոտ: Այս մարդը բանտի պահակին խնդրում է և մտնում Պետրոսի խուցը:

— Ինչու՞ ինձ կանչեցիք,— զարմացած հարցնում է նա:

— Բարեկամ, պարզ երևում է, որ դու օտարական ես: Ո՞վ ես դու և ի՞նչ գործ ունես այս երկրում,— ասում է Պետրոսը:

— Ես վաճառական եմ, առևտրական մի ընկերության անդամ, արևելքից նավով եկել ենք այստեղ առևտուր անելու,— ասում է վաճառականը և նայում անծանոթ բանտարկյալին:

— Ի՞նչ ազգից ես,— ասում է Պետրոսը վաճառականին:

— Ես հայ եմ, անունս էլ Մարկոս Միրզախանյանց է:

— Դու լսե՞լ ես, որ Մոսկվայի թագավորն այստեղ է գտնվում:

— Այո, լսել եմ:

— Հայ ես, դրա համար էլ ես քեզ մի գաղտնիք պիտի հայտնեմ, բայց այդ գաղտնիքը ոչ ոքի չպիտի ասես:

— Ոչ ոքի չեմ ասի, ասե՛ք:

— Ես Ռուսաստանի թագավոր Պետրոսն եմ, հոլանդացիք բանտարկել են ինձ:

Մարկոս Միրզախանյանցը զարմանքից չռում է աչքերը, ապա ետ-ետ գնում ու խոնարհ գլուխ է տալիս:

— Հրամայի՛ր, թագավորն ապրած կենա:

— Դու արդեն ինձ խոստացար, որ իմ ով լինելու գաղտնիքը ոչ ոքի չպիտի ասես, ինձ կօգնես այստեղից փախչել:

— Ես ինչո՞վ կարող եմ քեզ օգնել, հրամայի՛ր:



*— Քո վերարկուն բաշխիր ինձ, մի գրություն էլ հետը՝ ծեր առևտրական ընկերության նավի նավապետին, որ ինձ Արխանգելսկ հասցնի։*

*Հայ վաճառականը կատարում է թագավորի ասածը։*

*Պետրոսը հագնում է Մարկոսի վերարկուն, վերցնում է գրությունը և դուրս գալիս բանտից որպես վաճառական ու գնում ծովափ։ Գրությունը ներկայացնում է առևտրական ընկերության անդամներից ավագին, նա կարդում է և խոնարհ գլուխ տալիս թագավորին։*

*Ապա կարգադրում է նավավարին առագաստները վերցնել և շտապ հեռանալ դեպի Արխանգելսկ։*

*Շատ են գնում, թե քիչ, ծովի կատաղի ալիքները ճեղքելով հասնում են Արխանգելսկ, այնտեղից էլ՝ Մոսկվա։*

*Անցնում են օրեր։ Մարկոս Միրզախանյանցին տանում են Հոլանդիայի թագավորի մոտ։ Նա բարձրահասակ, թիկնավետ և սև մազերով այդ մարդուն Ռուսաստանի թագավոր Պետրոսի տեղ է ընդունում։ Բայց հարցաքննելուց հետո պարզվում է նրա ով լինելը։ Նա միամտաբար կարծում է, որ Պետրոս թագավորի փոխարեն սխալմամբ բանտարկել են հայ վաճառականին։ Հոլանդիայի թագավորը կարգադրում է իսկույն բանտից ազատել Մարկոս Միրզախանյանցին։*

*Մարկոս Միրզախանյանցը նստում է նավ և գնում Ռուսաստան։ Իմանում է, որ Պետրոս թագավորը գնացել է Մոսկվա, ինքը նույնպես գնում է այնտեղ։ Պետրոսն այդ ժամանակ լինում է Կրեմլում։ Մարկոսը ժողովրդի հետ սպասում է Կրեմլի դռանը, որ թագավորը դուրս գա, նրան տեսնի։ Քիչ հետո թագավորը՝ թագուհու հետ կառք նստած, դուրս է գալիս Կրեմլից։ Պետրոսը կառքի միջից հանկարծ նկատում է Մարկոս Միրզախանյանցին։ Իսկույն կանգնեցնել է տալիս կառքը, իջնում ցած և վազում, գրկում է Մարկոսին, համբուրում, ապա նրան տանում է կառքի մոտ, ծանոթացնում թագուհուն և ասում.*

*— Ահա այն մարդը, որ ինձ բանտից ազատեց։ Ես նրան երկնքում էի ման գալիս, բայց գտա երկրի վրա։*

*Պետրոսը Մարկոս Միրզախանյանցին տանում է պալատ և նրա համար ճաշկերույթ տալիս, ուրախանում։ Քեֆ են անում Պետրոս թագավորը և Մարկոս Միրզախանյանցը։*

*Թագավորը Մարկոսին առաջարկում է իր պալատի գեղեցիկ օրիորդներից մի հարսնացու ընտրել։ Մարկոսը ընտրում է մեկին և ամուսնանում։ Պետրոսը լինում է նրանց քավորը։*

*Մի լավ հարսանիք են անում նրանք։ Պետրոսը հայ վաճառականներին բնակելի տեղ է հատկացնում Պետերբուրգում և լայն արտոնություններ շնորհում աշխարհի բոլոր երկրների հետ առևտուր անելու։*

*Վերապատմեց՝ ԱՎԵՏԻՔ ԱԴԱՄՅԱՆ*

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

ըքների վրա դարսված էին թանկագին գավաթներ ու սկուտեղներ, որոնք զարդարված էին ադամանդով։

Սա մի հեքիաթ է, բայց իրենց փայլով Ալի-Բաբայի կուրացնող գանձերը միայն հեքիաթներում չեն լինում։ Բնության գաղտնարաններում ինչքա՜ն թանկագին գանձեր կան թաքնված։

Գանձերով հարուստ է նաև մեր հայրենիքի ընդերքը։ Ուրալյան լեռներում ոսկի և ինքնածին քարեր կան, Կովկասյան ժայռերում՝ կապար և արծաթ, Ղազախստանի ընդերքում՝ պղինձ և անագ։ Միջին Ասիայում, Սիբիրում, Հեռավոր Արևելքում, Սովետական Միության տարբեր ծայրերում արդյունահանվում են ուրիշ շատ թանկարժեք ու հազվագյուտ մետաղներ՝ ցինկ, վոլֆրամ, մոլիբդեն։

Ահա կառամատույցի մոտ կանգնած է մի գեղեցիկ շոգեքարշ, որը պատրաստված է երկաթից ու պողպատից, պղնձից ու նիկելից, կոբալտից ու ալյումինից։

Առանց քարածուխի, նավթի, բնական գազի դժվար է այժմ պատկերացնել մեր կյանքը։

Բայց մեր կյանքում այժմ նշանակալի դեր են խաղում ոչ միայն հանքային հանույթները։ Մեր երկիրը տեխնիկայի և գիտության ասպարեզում անցել է Ամերիկայից և ամեն օր հրաշքներ է գործում. Երկնակամարում դեռ շարունակում է պտտվել սովետական մարդու ձեռքով երկինք նետված երկրի արհեստական երկրորդ արբանյակը, որ ցնցեց ամբողջ աշխարհը։ Հեռու չէ այն օրը, երբ սովետական երկնային նավերը ճեղքելով միջմոլորակային տարածությունները, վայրէջք կկատարեն Լուսնի, ապա Մարսի վրա։

Իսկ ինչպիսի՜ հրաշքներ են խոստանում բյուրեղները, որոնց մասին, երեխաներ, մենք ձեզ արդեն պատմել ենք։ Իսկ լսել եք դուք մութ գիշերը լուսացնող ակնոցի մասին, այն մասին, թե ինչպես է մեքենան թարգմանություն անում, գիտեք, թե ինչեր կան օվկիանոսի հատակում, լսել եք ձյունե մարդու մասին։ Չգիտեք։ Դարձեք մեր ակումբի անդամ և ամեն ինչ կիմանաք։ Չէ՞ որ մեր ակումբը վարում է աշխարհահռչակ գիտնական, պրոֆեսոր Գիտունյանը։ Ի՞նչ է, դուք նրա անունը չե՞ք լսել։ Բայց այդ նրանից է, որ պրոֆեսոր Գիտունյանը չի սիրում, երբ իր անունը թերթերում գրում են։ Նա ամբողջ օրը տարված է գիտական աշխատանքով, լինում է միայն իր լաբորատորիաներում ու իր առանձնասենյակում, ուր նա հաստափոր գրքեր է գրում։ Եվ երբ նա համաձայնվեց վարել մեր ակումբը, այդ միայն նրա համար, որ երեխաներին շատ է սիրում։






















Դու տեսե՞լ ես, թե ինչպես է էշը թմբուկ խփում, շունը թառ նվագում, կատուն՝ քյամանչա, իսկ աքաղաղը զռնի փչում: Ո՞չ, ափսոս, շատ հետաքրքիր է: Ա՛յ, օրինակ, Գոհարիկը, երբ առաջին անգամ տեսավ այդ տարօրինակ երաժիշտներին, այնպես զարմացավ, այնպես, որ նրան թվաց, թե այդ բոլորը երազում է տեսնում: Եվ ինչպե՞ս չզարմանար նա, երբ առաջին անգամն էր տեսնում, որ տիկնիկները մարդու պես քայլեն, խոսեն, երգեն ու նվագեն:

Գարնանային արձակուրդի օրերին էր: Գոհարիկը իր մայրիկի հետ հյուր էր եկել Երևան, մորաքրոջ մոտ: Նրանց գալու հետևյալ օրը մորաքրոջ աղջիկը՝ Հայկուշը, իր մայրիկին ասաց.

— Ուզում եմ Գոհարիկին տիկնիկային թատրոն տանել, կթողնե՞ս:

— Ինչու չէ, աղջիկս, գնացեք,— պատասխանեց մայրիկը և ուզեց տոմսակի փող տալ, բայց Հայկուշը չվերցրեց:

— Իմ ու Դավիկի մշտական տոմսերով կգնանք,— ասաց նա և Գոհարիկի հետ դուրս եկավ:

... Երբ մարեցին դահլիճի լույսերը, և բացվեց թավշյա վարագույրը, Գոհարիկն ուղղվեց նստած տեղում ու մի քիչ էլ առաջ թեքվեց, որ ավելի լավ տեսնի:

— Վա՛յ, ինչքան փոքր մարդիկ են այստեղի դերասանները,— բեմում երևացող տիկնիկներին նայելով, ասաց Գոհարիկը:

— Դրանք մարդիկ չեն, տիկնիկներ են, դրա համար էլ տիկնիկային թատրոն է կոչվում,— Գոհարիկի ականջին փսփսաց Հայկուշը և շատ զարմացավ, որ մորաքրոջ աղջիկը այդ հասարակ բանը չգիտի:

— Վա՛յ, տիկնիկները խոսում են,— քիչ հետո ավելի մեծացավ Գոհարիկի զարմանքը,— վա՛յ, էշն էլ է խոսում, բա էշը կխոսի՞...

Թեև Գոհարիկը շատ ուրիշ բաներ էլ հարցներ, եթե կողքի նստած տղան նրան նկատողություն չաներ բարձր խոսելու համար:

Գոհարիկը ամաչեց ու այլևս հարց չտվեց: Նա իր ամբողջ ուշադրությունը դարձրեց դեպի բեմը: Այդ ժամանակ չար ագահ արդեն տանից դուրս էր արել խեղճ իշուկին: Դուրս էր արել, որովհետև ուժասպառ էր եղել և այլևս չէր կարող աշխատել իր տիրոջ համար: Երկար մտածելուց հետո էշը գլխի ընկավ, որ թափառելը օգուտ չի տա, պետք է աշխատել: Ու նա որոշեց երաժիշտ դառնալ: Մի թմբուկ ճարեց և երգելով ու թմբուկ խփելով ճանապարհ ընկավ: Գնաց, գնաց և հանդիպեց մի շան, որին նույնպես դուրս էր արել նրա տերը:

— Ոչինչ,— ասաց էշը,— ընկերացիր ինձ, դու էլ թառ կնվագես, և համերգ տալով կապրենք:

Թմբկահար էշն ու թառահար շունը իրենց հետ վերցրին նաև կատվին ու աքաղաղին և շարունակեցին ճանապարհը: Էշը թմբուկ էր խփում, շունը թառ նվագում, կատուն՝ քյամանչա, իսկ աքաղաղը զռնի էր փչում: Հետո նրանք հարձակվեցին իրենց չար ու անգութ տերերի վրա, դուրս վռնդեցին տանից և նրանց փոխարեն նստեցին ու-





տելիքներով լի սեղանի շուրջը:

Երբ ներկայացումը վերջացավ, Հայկուշը նկատեց, որ Գոհարիկի աչքերը ուրախությունից ու զարմանքից փայլում էին:

— Հավանեցի՞ր չէ՞,— հարցրեց Հայկուշը:

— Շա՛տ, շա՛տ հավանեցի,— հիացմունքով պատասխանեց Գոհարիկը և խնդրեց, որ նա ասի, թե ինչո՞ւ են այստեղի տիկնիկները խոսում, իսկ խանութինը՝ ոչ:



Եվ Հայկուշը նրան բացատրեց, որ այդ բոլորը դերասաններն են կատարում, բայց իրենք չեն երևում: Հետո պատմեց, որ ինքը ճանաչում է Պավլոս Բորոյանին, Ժիրայր Պետրոսյանին, Հայկուշ Երեմյանին, Վիրաբ Հարությունյանին, վաստակավոր արտիստ Խորեն Զաքարյանին, Մարգար Ավագյանին և ուրիշ դերասանների:

— Վաղն էլ կնայենք «Երկու ընկեր», իսկ մյուս



օրը՝ «Աժդահ գայլը» ներկայացումները: Դրանք էլ շատ հետաքրքիր են:

Գոհարիկը շատ ուրախացավ, որ էլի է գալու տիկնիկային թատրոն: Եվ նա մտքում հաստատ որոշեց գյուղ վերադառնալիս ամենից առաջ պատմել տիկնիկային թատրոնի մասին, որպեսզի Երևան եկող երեխաները՝ առանց տիկնիկային թատրոնի ներկայացումները նայելու, տուն չվերադառնան:

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



Դե, երեխանե՛ր, գրեք մեզ հետաքրքրող հարցերի մասին: Գիտության ու տեխնիկային վերաբերող ամեն մի հարց կարող եք ուղարկել մեզ: Պրոֆեսոր Գիտունյանը սիրով մեզ կպատասխանի:



Երբ մենք պրոֆեսորին ավեցինք Լենինականի երկարգծի 40-րդ դպրոցի աշակերտ Հրանտիկ Զամբազյանի հարցը, թե հնարավոր կլինի՞ մութ գիշերը տեսնել ցերեկվա պես, նա բթի տակ ժպտալով ասաց.



—Շատ հետաքրքրասերն են այս երեխաները. տեսեք, թե ինչպիսի հարցեր են տալիս: Հետո նա ակնոցը դրեց և արագ գրեց հետևյալ պատասխանը.

## Նոկտովիզոր



Նոկտովիզորը գիշերային էլեկտրական հեռադիտակ է, որը թույլ է տալիս խավար, անաստղ գիշերին այնպես պայծառ տեսնել, ինչպես սովորական աչքով մարդ տեսնում է արևոտ օրը:



Նոկտովիզորի միջոցով կարելի է տեսնել ոչ միայն գիշերը, այլև խիտ մառախուղի ժամանակ և ամպերի հաստ շերտի միջով: Նոկտովիզորը մեծ օգնություն կարող է ցույց տալ ավտովարորդներին, մեքենավարներին, օդաչուներին և շտուրմաններին: Այդ հիանալի գործիքը կարելի է օգտագործել նաև լաբորատորիաներում և արտադրության մեջ, երբ անհրաժեշտ է որևէ աշխատանք կատարել թույլ լույսի կամ մթության մեջ:



Իսկ ինչպես է հնարավոր լինում տեսնել մթության մեջ:

Հայտնի է, որ բոլոր մարմինները արձակում են ինֆրակարմիր ճառագայթներ, որոնք մարդու համար անտեսանելի են: Գիտնականները խնդիր դրեցին իրենց առաջ ինֆրակարմիր ճառագայթները վերածել լուսային ճառագայթների և այդ խնդիրը կարողացան լուծել:



Ինքը՝ նոկտովիզորը կշռում է 150-ից 200 գրամ, իսկ նրան սնուցող էլեկտրական ակումուլյատորը՝ 1,5—2,0 կգ: Նոկտովիզորը կարելի է հարմարեցնել սաղավարտի վրա, սակայն մեքենաների, նավերի, օդանավերի և շոգենավերի վրա սնուցող ակումուլյատորը կարելի է դնել ցանկացած տեղում և ճկուն լարով միացնել հեռադիտակին:



Հեռու չէ այն օրը, երբ նոկտովիզորն իր էլեկտրական աղբյուրի հետ միասին այնքան կթեթևանա, որ սովորական ակնոցից միայն շատ քիչ ծանր կլինի:

# Պիոներ

## ՁԱՅՆԱՎՈՐԴ „ԿԵՆԴԱՆԻՆԵՐ"




1. Կապկի տեսակ, 2. խոտա-կեր կենդանի, 3. թռչուն, որը հայտնի է իր գեղեցկությամբ, 4. գիշատիչ կենդանի, 5. գիշե-րային գիշատիչ, 6. կրծող, 7. ձկան տեսակ, 8. ծովային կաթնասուն, 9. թռչուն, 10. խոշոր ջրային սողուն:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«Պիոներ» № 3

ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ-ՆԵՐԸ—«Սասունցի Դավիթը», «Գու-թանի երգը», «Շունն ու կատուն», «Փարվանա», «Սուտլիկ որսկանը», «Ահմադը», «Գիքորը», «Քաջ Նազա-րը», «Անուշ», «Մարո», «Անիծած հարսը», «Ախթամար», «Մայրը»:

«ՊՈԼԿԱ» ՊԱՐԸ—«Պոլկան» չեխական ժողովրդական պար է: Նրա անվա-նումն առաջացել է չեխական «pül-ka» բառից, որ նշանակում է կես, իսկ ներկա դեպքում՝ կես քայլ (պա-րի հիմնական շարժումը):

ՓՈՐՁԵՔ—



ԿԱՏԱԿ—Սելենգա—Սենեգալ:

ՔԱՆԻ՞ ՏԱՐԵԿԱՆ Է ԴԱԳԻԿԸ—Հոր և որդու միջև 23 տարվա տարբերու-թյուն կա, հետևաբար որդին պետք է լինի 23 տարեկան, որպեսզի հայ-րը նրանից երկու անգամ մեծ լինի:

ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ՉՈՐՍ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

$(1+2):3=1$,

$12:3:4=1$,

$[(1+2)\cdot 3-4]:5=1$,

$(1\cdot 2+3-4+5):6=1$

$\{[(1+2)\cdot 3-4]:5+6\}:7=1$

$[(1+2):3\cdot 4+5+6-7]:8=1$

$(1\cdot 2+3+4-5+6+7-8):9=1$

ՄՈՒԹ ՍԵՆՅԱԿՈՒՄ—չորս կոշիկ և երեք գուլպա:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

Տեխ. խմբագիր՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки. № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:*

*ՎՖ 03784. Պատվեր 361. Տիրաժ 6000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/IV 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:*

Գինը 2 ռ.




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի 1-ին էջը՝ Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ*

**Այս համարի հետ հավելված է լույս տեսել հոկտեմբերիկների համար, որը տրվում է ձ ր ի:**



# ԼԵՆԻՆ ՊԱՊԻՆ

ՀԱՅՐԱՊԵՏ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Լենին պապին էլ
Մանուկ է եղել
Մեզ նման պստիկ,
Ժիր ու սիրունիկ։
Բռնել է թիթեռ,
Սիրել ծաղիկներ,
Սահնակով սղղալ,
Երգել ու խաղալ։
Բայց խաղ ու պարից,
Սահնակ, թիթեռից,
Երգից առավել
Ուսումն է սիրել։



# ԳԱԳԻԿԸ ՍՏՈՒԳՈՂԱԿԱՆ Է ԳՐՈՒՄ

ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ



Դասարանում լռություն է. միայն գրիչների ճռռոց և փսփսոց է լսվում: Չէ՞ որ սա առաջին ստուգողական թելադրությունն է առաջին դասարանում: Ինչ խորհրդավոր է հնչում այդ «ստուգողական» բառը, նույնիսկ վախենալու է: Եվ պստլիկ աշակերտները մըկնիկների պես ականջները սրած, հայացքները հառած ուղիղ գրչածայրին, զգույշ-զգույշ շարում են տառերը:

— Ընկեր Էմմա,— հուսահատ ճչում է մի փոքրիկ աղջիկ:

— Ի՞նչ պատահեց,— հարցնում է ուսուցչուհին անհանգստացած:

— «Լ»-ի պոչը մեծ եղավ...

— Դե լավ, դե ոչինչ, ուշադիր եղիր,— նեղանում է ընկեր Էմման ու շարունակում իր երգեցիկ ձայնով, դանդաղ, հատ-հատ թելադրել:

Գագիկն էլ է ուշադիր գրում, նա գրչի յուրաքանչյուր շարժման հետ լեզվի ծայրը տանում է շրթունքի վրայով, իսկ դա նշանակում է, որ նա դժվար գործ է կատարում: Ճակատը քրտնել է, այտերը կարմրել են, բայց ոչինչ, ահա վերջացավ: Վերջակետ: Հո սխալ չկա՞... կարդում է՝

Ինչ սիրուն ես դու, իմ շնիկ,
Քանի այդպես փոքրիկ ես,
Ես քեզ համար միս կբերեմ,
Լավ կերակուր կուտեցնեմ:

Սխալ չկա, նա ուրախանում է, բայց... տեսնես ի՞նչ տեսակ է այդ շնիկը, հանկարծ մտածում է նա, չլինի՞ այն Ջեկոյի նման է, որ ապրում էր մանկապարտեզի բակում: Ինչ լա՜վ էր մանկապարտեզում, կարոտած միտք է անում Գագիկը, ամբողջ օրը երգ, պար, խաղեր, համեղ ուտելիքներ: Իսկ այստեղ՝ կարդա, գրիր, պատասխանիր: Իսկի չեն թողնում, որ դասի ժամանակ գոնե մի ընկույզ ուտես: Երանի նորից այնտեղ լիներ, Ջեկոյի հետ էլ կխաղայի, հիմի Ջեկոն մեծացած կլինի... և գրիչը Գագիկի ձեռքում սկսում է նորից շարժվել:

— Հի՛, հի՛, հի՛, շունը...— Գագիկը

շուն է նկարել տետրակում,— ծիծաղից խեղդվում է նրա կողքին նստած Գոհարիկը։

Բարձրանում է մանկական քրքիջ, բոլորը գլուխները երկարացնում են դեպի Գագիկի տետրակը։ Մոտենում է ուսուցչուհին ու զարմացած կանգ առնում։ Մաքուր, անսխալ գրված ստուգողական թելադրության տակ նկարված է կեռպոչ, ցիցականջ, մազը գզգզված մի շուն և թանաքով կապույտ է ներկված։

ընկեր Էմման,— մի՞թե չգիտես, որ նկարել կարելի է միայն նկարչության տետրում։ Երևի դեռ փոքր ես, քեզ պետք է տանել մանկապարտեզ։

Իսկ երեխաները նորից են քրքջում ու ծածուկ կանչում. «Մկան պարտեզ, մկան պարտեզ»։

Գագիկը վախեցած նայում է տետրակին... «Երկու» կստանամ», մտածում է նա։ Լացը գալիս է, հասնում քթի ծայրին։ Գլուխը կռացնում է, քիթը կպչում է շան պոչին... Նա բար-



Ուսուցչուհին տեսածին չի հավատում. այս ի՞նչ քամի է փչել Գագիկի խելքին։

— Մի՞թե չգիտես, որ հիմա հայոց լեզվի դաս է,— խստորեն ասում է

կանում է, ուղղվում ու նայում կրծքին խփված աստղին, նայում է, նայում և հանկարծ ամաչում է լաց լինել։ Ձեռքով ծածկում է Ջեկոյի նկարը. այս բոլորի պատճառը նա էր...

Դասերից հետո Գագիկը տուն էր գնում չափազանց տխուր և իրենից դժգոհ։ Ինչքա՜ն էր նա ուզում շուտ մեծանալ, մեծի նման լինել, իսկ հիմա նորից «մկան պարտեզ», ախր ինչ գործ ուներ Ջեկոն հայոց լեզվի տետրակում... այդ ո՞նց պատահեց։ Նա հիմա մե՞ծ է, թե փոքր է...

Այդպես մտածելով գնում էր, երբ հանդիպեց իրենց մանկապարտեզի երեխաներին, որոնք Աննա մորաքույրի հետ վերադառնում էին զբոսանքից։

## ԶԲՈՍԱՆՔ

Նկ. Ռ. ԲԱԲԱՅԱՆԻ





— Գագի՛կը, Գագի՛կը, — ձայն տվին երեխաները՝ շրջապատելով նրան։

Գագիկն ինչ-որ շփոթված կանգ առավ. մոտեցավ մորաքույր Աննան, շոյեց նրան, սկսեց նայել ժպտուն աչքերով ու զանազան հարցեր տալ։ Երեխաները նույնպես երանությամբ ոտքից գլուխ տնտղում էին Գագիկին, շոշափում փայլուն գոտին, աշակերտական հագուստը, պայուսակը, իսկ կարճլիկ, գնդակի պես շարժուն մի տղա, որի հետ միասին Գագիկը Ջեկոյի համար բույն էր սարքել, քաշեց նրա թևից։

— Արի գնանք մանկապարտեզ, մի քիչ խաղանք։

— Արի գնանք, արի գնանք, — ասացին մյուսները։

Գագիկը տատանվում էր։ Հանկարծ նա սթափվեց. կարծես այնպիսի տեղ էին հրավիրում, որը խիստ վիրավորական է նրա համար։

— Ձեմ գա, — կոպարար ձայնով ասաց նա, — չե՞ք տեսնում, որ ես հիմա մեծ եմ, ես հոկտեմբերիկ եմ, ա՛յ, նշան էլ ունեմ... և ժամանակ չունեմ ձեզ հետ խաղալու, դաս պետի սովորեմ... ա՛յ դուք ճստլո-պստլոներ...

Եվ գլխարկը հանելով հրաժեշտ տվեց։

«Ես հիմա խսկականից մեծ եմ», որոշեց նա և ուրախ սուլելով շարունակեց ճանապարհը։

## ԿԱՏՈՒՆ ՊԱԼԱՏՈՒՄ

(Անգլիական)

— Ո՞ւր գնացիր երեկ դու,
Փափկամազիկ իմ կատու:
— Մտա պալատն արքայի,
Երանի տուն չգայի:
— Իսկ ի՞նչ տեսար պալատում
Փափկամազիկ իմ կատուն:
— Հենց որ մտա ես պալատ,
Տեսա մկներ հինգ-վեց հատ:

Փոխադր. Հ. ՍԵՎԱՆ





Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

## Մայր նապաստակի վիշտը

Ա. ՍԱՐԳԱՐՅԱՆ

— Նախ թաթերդ մաքուր լվա
Օճառով ու պաղ ջրով.
Թե չհսկեմ, դու անլվա
Պիտի մնաս օրերով:
Լվա նաև աչիկներդ,
Իսկ ատամներդ՝ հետո,
Ապա՝ դունչդ ու ականջներդ,
Այդպես կարգին ու հերթով:
Խոզանակը բռնիր այսպես,
Փոշին շատ մի՛ թափթփիր,
Ե՞րբ լվացվել կսովորես,
Ա՛յ անշնորհք ու փնթի:

## Կեռասի կորիզը

Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Եղիշը երեք տարեկան է. Նա շատ խելոք տղա է, այնքան խելոք, որ բոլորն էլ նրան սիրում են։ Նա էլ սիրում է բոլորին՝ հայրիկին, մայրիկին, Վահանին, լսում է նրանց։ Մի ժամանակ, երբ մայրիկը տաշտակը ներս էր բերում Եղիշին լողացնելու, Եղիշը թաքնվում էր, լաց ու կոծ անում ու դեռ չլողացած աղաղակում.

— Վեցացրի՜նք, վեցացրի՜նք։ Էլ ցենք լողանալու։

Իսկ երբ նրա համար կարդացին «Ջոփչոփ արած» գիրքը ու բացատրեցին, որ կպրոտներին, ճպռոտներին, կեղտոտ, մրոտ բալիկներին ոչ ոք չի սիրի, նրանցից կփախչեն բոլորը, նույնիսկ վերմակն ու բարձը, կոշիկներն ու խոզանակը, գրքերն ու խաղալիքները, Եղիշը, որ լուռ լսում էր, համոզվեց և խոստացավ այսուհետև լողանալիս այլևս չաղմկել։

Դե, պա՛րզ է, հայրիկն էլ նրան կսիրի, մայրիկն էլ, Վահանն էլ։ Բոլորն էլ Եղիշին կսիրեն։

Բայց մի անգամ նա մի անթույլատրելի բան արեց, որի պատճառով մինչև ականջները կարմրեց։

Եղիշենց սենյակի հատակի տակ նկուղն է։ Այնտեղ հով լինելու պատճառով մայրիկը ամռանը պահում է շուտ փչացող մրգերը, կաթ, մածուն, իսկ ձմռանը՝ վառելափայտ, ամեն օր պետք չեկող իրեր ու երկար դիմացող ուտելիք։ Նկուղի անմիջապես վերևը գտնվում է սենյակը, որի հատակը նկուղի առաստաղն է։ Իսկ հատակի վրա կա մի փոքր ճեղք, որտեղից եթե աչքդ կկոցած նայես, նկուղի ներսը կտեսնես։ Օրինակ, հարևան Հռիփսիմե տա-

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



տիկը կաթը չփչանալու համար մի աման մածուն էր մերել ու դրել Եղիշենց նկուղը, որ սառի, իսկ ամանի բերանն էլ բաց էր թողել, որ չթթվի։ Եղիշն էլ շուտ-շուտ այդ ճեղքից նայում էր, որ տեսնի՝ «մածունը հո չի թթվել»։

Եղիշը միրգ շատ էր սիրում, ամենից շատ՝ կեռասը։ Եվ այդ օրը, երբ Հռիփսիմե տատիկենց մածունը նկուղում սառում էր, մայրիկը շուկայից կեռաս բերեց, լվաց, լցրեց ափսեի մեջ ու ասաց.

— Տես, Եղիշ, կորիզները հատակին չըթափես, կդնես ափսեի եզրին։ Լսեցի՞ր։

— Այո, — պատասխանեց Եղիշն ու ըսկըսեց կեռասն ուտել։ Իսկ մայրիկը գնաց խոհանոց ու զբաղվեց իր տնային գործերով։

Եղիշը սկզբում, մայրիկի ասածի պես, կորիզները դնում էր ափսեի եզրին։ Հետո, չգիտես ինչու, մեկ էլ խելքին փչեց մի քանի հատ հատակի ճեղքից ներս գցել։ Եվ գցեց։ Մեկ, երկու, մեկ էլ հանկարծ լըսվում է մայրիկի ոտնաձայնը։

— Այդ ի՞նչ ես անում, տղաս, — հարցնում է մայրիկը ներս մտնելով։

— Ես, ես... ես կեռաս ուտում եմ, — շփոթված պատասխանում է Եղիշը։

— Դե, կե՛ր, սիրունիկս, — ասում է մայրիկը ու շարունակում գործը։

Այնուհետև բավական ժամանակ անցավ։ Հռիփսիմե տատիկը վաղուց սառած մածունը տուն էր տարել։

Երեկո էր։ Մայրիկը Վահանին էր կերակրում։ Եղիշն էլ հայրիկի գրկում նստած՝ պատմում էր, թե այսօր ինչքան խելոք է մնացել, ինչպես է զբաղեցրել Վահանին, ոտանավորներ արտասանել նրա համար,



մայրիկին լսել, նրա ասածները մեկ-մեկ կատարել։

— Բա-ա՜, — բացականչում է Եղիշը տեսնելով, որ հայրիկը մեծ ուրախությամբ է լսում իրեն։ — Տեսնո՞ւմ ես, որ ես արդեն մեծ տղա եմ։ Համ էլ կեռաս էլ սատ եմ սիրում։ Բա-ա՜...

Եվ մինչև Եղիշը մտածում էր էլ ինչո՞վ ուրախացնել հայրիկին, ներս մտավ Հռիփսիմե տատիկը։

— Օրը գնում է, փորձանքը մնում։ Լըսվա՞ծ բան է, մածունի մեջ կեռասի կորիզ, էն էլ հո մի հատ չէ, երկու հատ չէ, 5—6 հատ։

— Կեռասի կորի՞զ, — զարմացան հայրիկն ու մայրիկը։

— Հա բա, կեռասի կորիզ, — շարունակեց Հռիփսիմե տատիկը, — որ չընկա՜վ ատամիս տակ, ասացի՝ երկինքը գլխիս մթնեց։

— Կեռասի կորիզն ի՞նչ գործ ուներ մածնի մեջ, — հարցրեց հայրիկը։

— Դե, ես էլ եմ զարմանում։ Իմ ձեռքով կաթն եփեցի, իմ ձեռքով մերեցի, իմ ձեռքով էլ դրեցի ձեր նկուղը, էլ որտեղի՞ց էդ անիրավ կորիզները, էնպես էլ չհասկացա։

— Կեռասի կորի՜զ... — շշնջում է մայրիկն ու կասկածելով նայում Եղիշին։ — Դու սենյակի ճեղքից կեռասի կորիզ գցե՞լ ես նկուղ։

— Ե՞ս... ես... ոչ... — կմկմալով պատասխանեց Եղիշը։

— Հապա մի ուղի՜ղ նայիր աչքերիս։

— Ե՞ս... ես... — շշնջաց Եղիշն ու աչքերն ամուր փակեց։

Մայրիկին կասկածելու այլևս ոչինչ չմնաց, մանավանդ, երբ Եղիշը մինչև ականջները կարմրեց։




Ն. ՍԱԿՈՆՍԿԱՅԱ

Կա մի հրաշք այսպիսի,
Ո՞վ չի լսել այդ մասին,
Շատ խելոք է մտածված,
Շատ խորամանկ կառուցված։
Սահում է՝ չի օրորվում,
Հոսում է՝ չի վերջանում.
Որտե՞ղ է այդ կատարվում՝
— Մետրոյում։

Իսկ ինչպիսի՜ դռներ կան,
Զարմանք-հրաշք իսկական,
Դանդաղկոտ բերանբացին
Չեն թողնի շեմքից անցնի։
Գնացքը հենց շարժվում է,
Դուռն ինքնիրեն փակվում է.
Որտե՞ղ է այդ կատարվում՝
— Մետրոյում։

Կան ընդարձակ սրահներ,
Ստորերկրյա կայաններ,
Մարմարակերտ պատերով,
Զարդաքանդակ սյուներով.
Արձաններով զարդարուն,
Կառամատույցն է շողում.





ՆԿ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Որտե՞ղ է պյդ գտնվում՝
— Մետրոյում։

Եվ մարդիկ կան այնպիսի,
Աշխատասեր, քաջասիրտ,
Բանվոր ու բետոնագործ,
Ինժեներ, թունելագործ,
Նրանք հաստատ ասացին՝
Կտանք գործը ժամկետին.
Որտե՞ղ է գործն այդ արվում՝
— Մետրոյում։

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ



# ՓԻՍՈՅԻ



# ԵՐԱԶԸ

ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Կլոր բարձի վրա քնքուշ
Փիսոն պառկեց, քնեց մուշ-մուշ.
Մեկ էլ տեսավ, որ երազում,
Հազար տեղից մուկ է վազում,

Շրջան կազմել, պար են գալիս,
Քրքջում են, ծափ են տալիս։
Կատակում են, գոչում.—Տաշշի՛,
Գնա՛ կատվի պոչը քաշի..

Զիլ թնդում է ձայնը նրանց,
Ու խմում են իրար կենաց...
«Այսքան տարվա ես կատու եմ,
Ոչ լսել եմ, ոչ տեսել եմ,
Որ մկնիկները հանդգնեն
Ու կատվի մոտ երգեն, պարեն»,

Ասավ կատուն, ելավ տեղից,
Բռնեց մի մեծ մկան բեղից,
Քաշեց, տարավ մի հարմար տեղ,
Որ ճաշակի միսը համեղ։

Բայց փիսոյի բախտը փլվեց,
Կլոր բարձից, հո՛պ, գլորվեց։
Դատարկ փորով ելավ, գնաց,
Ա՛խ, երազից բան չմնաց։



# Աչքածակ հարևանը

Խ. ՀՐԱՋՅԱՆ

Մհոն ու Իբոն հարևաններ էին։ Մհոն հարուստ էր, Իբոն՝ աղքատ։ Ամեն տարի Մհոն իր ոչխարի հոտը բարձրացնում էր սարերը, մինչև ուշ աշուն մնում էնտեղ և յուղ ու պանրով բեռնավորված ետ գալիս։

Իբոյի ունեցած-չունեցածը երեք այծ էր և մեծ ու պստիկ երեխաների մի բուլուկ, էնքան շատ՝ մաղի ծակերը քեզ օրինակ։ Զարմանալու ինչ կա որ. ասած է՝ աղքատի մեկ դարդն ու ցավը շատ կլինի, մեկ էլ՝ ուտող բերանը։

Ապրում էր Իբոն կնոջ ու երեխաների հետ, մի օր կուշտ, մի օր սոված, առանց ուրիշի ունեցածին աչք դնելու։ Նրա հույս-ուրախությունն իր երեք այծերն էին.

Զալիկ-Մալիկը,
Ճերմակ Բոլիկը,
Երկարամորուք
Սևուկ մայրիկը։

Մհոն ինչքան որ հարուստ էր, երկու էնքան էլ աչքածակ էր։

Իր ունեցած ոչխարի հոտը՝ հեչ, նա աչքը տնկել էր խեղճ Իբոյի երեք այծերին՝

Զալիկ-Մալիկին,
Ճերմակ Բոլիկին,
Երկարամորուք
Սևուկ մայրիկին։

Շատ միտք արավ Մհոն, շատ վերցրեց-դրեց, թե ոնց խեղճ Իբոյի այծերն իրենով անի ու հնարը գտավ։ Մի օր նա եկավ հարևանի մոտ ու էսպես ասավ նրան.

— Այծերդ տուր ոչխարներիս հետ տանեմ սար, աշնանը ետ կբերեմ, յուղն ու պանիրն էլ հետը՝ հոգուս վարձք...

Խեղճ Իբոն չիմացավ, ոնց շնորհակալ լինի, այծերը քշեց-խառնեց հարևանի հոտին ու սկսեց աչք պահել աշնան գալուն։

Աշունը որ եկավ, ոչխարը իջավ սարից, Իբոն շտապեց հարևանի մոտ։ Բայց Մհոն իր բանը լավ գիտեր. նա արդեն պահել-պարտկել էր Իբոյի այծերը և էսպես ասավ նրան.

— Զալիկ-Մալիկը
Գլորվեց ձորը։
Ճերմակ Բոլիկը
Թրմփաց հորը։



Երկարամորուք
Սևուկ մայրիկը
Իր ոտով մտավ
Ծեր գայլի փորը…

Մորուքս վկա, դրուստ եմ ասում։

Շատ տխրեց խեղճ Իբոն, շատ ախուվախ արավ, էնպես որ Մնոյի սիրտը շարժեց։

— Ա՛յ կնիկ, մի կճուճ մածուն բեր, Թող Իբոն տանի քրոջն ու երեխեքին,— ասավ նա։

Իբոն կնոջ ձեռքից կճուճն առավ, Թափով զարկեց գետնին, ասելով.

— Հարամ է քո հացը, Մնո, քո մածունն էլ գլխիդ հարամ լինի։

Կճուճը կոտր-կոտր եղավ, մածունը շաղ եկավ Մնոյի բեղ ու միրքին։ Նա շատ ուրախացավ, որ էդպես հեշտ ազատվեց ու ասավ.

— Փառք քեզ, աստված, հարևանի առաջ ճերմակերես դուրս եկանք։



## ՄԵԾԱՄԻՏ ԱՔԼՈՐԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մի օր աքլորը
Կտուր բարձրացավ,
Նայեց շուրջը իր
Ու շատ զարմացավ.
— Ա՜յ քեզ հանելուկ,
Գլուխ չեմ հանում,
Կտուրը տակիս
Ո՞նց է դիմանում…

## ԾՒՎԼԱՆԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Ա՛յ ծւվլան Թամարա,
Արի, մի գործ տամ՝ արա.
Քի՛չ ման արի, երգ ասա…
Հո անբանի տեղ չի՞ սա:

Տուն հավաքել չգիտե՞ս,
Հիմա անեմ, իսկ դու տես.
Ծառ չե՞ս ջրել ոչ մի օր,
Կսովորես, ի՞նչ կա որ:

Իսկի արդուկ չե՞ս արել,
Իսկի կոճակ չե՞ս կարել,
Չե՞ս լվացել դու աման…
Վա՜յ, թող մարդիկ չիմանան…

Արի՛, արի՛, Թամարա,
Փոքրիկ մի գործ տամ՝ արա,
Նոր ծւվլա դու անհոգ…
Սո՜ւս, չիմանա էլ ոչ ոք:



# Երաշտահավն ու մկնիկը

ԱՆՆԵ ԳԵԵԼՀԱԱՐ





Ժամանակով ապրում էին մի երաշտահավ ու մի մկնիկ։ Սրանք իրենց կյանքում երբեք իրար չէին տեսել։

Ձմռան մի արևոտ օր երաշտահավը նստել էր մի գյուղացու կալում, իր ամենասիրած տեղում։

Այդպես, ծառի ճյուղին նստած՝ նա ուրախ-ուրախ օրորվում էր։ Մեկ էլ հանկարծ նկատեց կալում թափված ցորենի մի քանի հատիկ, որ հավերը չէին կերել, մոռացել էին։

— Շատ շնորհակալ եմ, էդ ինձ համար է,— ծլվըլաց երաշտահավն ու ծա-



ռից ցած թռավ։

Բայց հենց որ մոտեցավ ցորենի ոսկեգույն հատիկներին, նրա ականջը մի սըվ-սըվոց ընկավ. ինչպե՜ս սկսեց խփել խեղճ երաշտահավի սիրտը։ Նա գլուխը վեր բարձրացրեց և տեսավ սուր դնչով, գորշագույն մորթով ու հսկայական երկա՜ր պոչով մի բան գալիս է դեպի իր կողմը։

Երաշտահավը սարսափած ցատկոտելով իրեն գցեց ծառի ճյուղի վրա։

Սակայն մկնիկը նույնպես սաստիկ վախեցավ։ Նա



շուռ եկավ ու այնպիսի արագությամբ փախավ, որ սև ժապավենի նման երկար պոչը միայն երևաց։ Փախավ ու անհետացավ իր բնում։

Հետո նա մեծ զգուշությամբ որոշ ժամանակ այս ու այն կողմը դիտեց, և որովհետև ոչ ոքի չտեսավ, զարմացած մտածեց. «Այդ ի՞նչ էր, որ ինձ, խեղճիս, այդպես սարսափեցրեց. ինձ թվում է, ես սխալվել եմ։ Եթե նույնիսկ որևէ մեկը այնտեղ կար էլ, միևնույն է, հիմա գնացած կլինի։ Ցորենի հատիկները դեռ իրենց տեղում են»։ Ու մկնիկը նորից դուրս վազեց իր բնից։





Ճիշտ այդպես էլ սարսափեց երաշտահավը։ Բայց երբ վախը մի փոքր անցավ, նա էլ նայեց հատիկներին և սիրտ անելով, մի անգամ էլ ցած թռավ։

Այս անգամ նա այնքան մոտիկից հանդիպեց անծանոթ «հրեշին», որ սարսափից թևերը թուլացան։ Ապա մի կերպ ցատկոտելով թռավ ճյուղին, և թևերը թափահարելով լեղապատառ ճղղաց. «Ծի՛վ, թռչնակ եմ ես մի անմեղ և վաղուց եմ ապրում այստեղ»։

Երաշտահավի այս խոսքերը լսելուն պես՝ մկնիկը նորից ուզեց սրտապատառ փախչել։ Նա սկսեց ամբողջ մարմնով ցնցվել, պոչը դողդողաց, իսկ սև, փոքրիկ աչքերը սարսափով բոցավառվեցին։ Բայց և այնպես սիրտ արեց ու ասաց. «Ես մի փոքրիկ մկնիկ եմ, տես, այստեղ է իմ տունը»։



«Ահա՛ թե ինչ», մտածեց երաշտահավը և թեթևացած ցած թռչելով, ասաց.

«Բա այդքան վախկոտ կլինե՞ն, մոտ արի, բարեկամս, ես քեզ կհյուրասիրեմ»:

Դրանից հետո նրանք ձեռք տվին միմյանց և սկսեցին մեկը մյուսին հյուրասիրել:

«Սվո, սվո»—«ճիվ, ճիվ»—դու այդ կողմից, ես՝ այս կողմից,—մեղմ հոսում էր զրույցն այսպես.

— Մի հատիկը դու վերցրու,  
Իսկ մյուսը տուր ուտեմ ես.  
Եթե լինենք այսպես սիրով,  
Հերիք կանի և՛ ինձ, և՛ քեզ:

*Գերմ. թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆ*

Տրվում է ձրի «Պիոներ» ամսագրի 4-րդ համարի հետ

# ՓԻՍԻԿՆ ՈՒ ԲԱԴԻԿԸ



1. Փիսիկ-Սուսիկը խնդիրը լուծեց,
Բադիկ-Ծուլիկը լուռ արտագրեց։

2. Երկուսով ահա դպրոց են գնում,
Բադիկը ուրախ երգեր է երգում։





3. Փիսոն գետակը կամուրջով անցավ,
Բադիկը տեսեք, նետվեց, լողացավ։



4. Աքլորը նրանց դասերն ստուգեց,
Բադիկի տետրից ջուր միայն հոսեց։



5. Փիսիկ-Սուսիկը «հինգ» է ստացել,
Բադիկ-Ծուլիկին գետակն է պատժել։

Տեքստը՝ Գ. ԱԼԱԳՅՈԶՅԱՆԻ
Նկարները՝ Հ. ԳԱԼԵՆՑԻ




# ԱԼԵՔՍԱՆԴՐ ՇԻՐՎԱՆԶԱԴԵ

«Անդրկովկասի մի անկյունում կա մի քաղաք, անունը՝ Շամախի կամ Շիրվան:

Ա՜հ, հրաշալի է այդ քաղաքի բնությունը: Երկիրը բույսերով, ծաղիկներով փարթամ, ինչպես մի սքանչելի պարտեզ: Այնտեղ ձմեռը եղանակը մեղմ է, դուրեկան, ոչ քամի, ոչ փոթորիկ: Իսկ գարնանը և ամառը բարձրագագաթ ծառերի վրա գիշեր-ցերեկ երգում են անթիվ սոխակները:

Եվ ի՜նչ համեղ մրգեր կան այնտեղ, եթե գիտենաք, ի՜նչ հոտավետ պտուղներ»,—այսպիսի հիացմունքով ու սիրով է պատմում հայ մեծ գրողը իր ծննդավայրի մասին:

Շամախիում է իր աչքը բաց արել Ալեքսանդր Մովսիսյանը՝ Շիրվանզադեն: Յոթ տարեկան էր փոքրիկ Ալեքսանդրը, երբ առաջին անգամ մայրը նրան տարավ ուսումնարան: Երեխան այդտեղ ճաշակեց Սարգիս վարպետի՝ իր ուսուցչի քանոնի հարվածները: Ալեքսանդրը երկար չմնաց Սարգիս վարպետի մոտ: Նա տեղափոխվեց Տեր-Ավանեսի ուսումնարանը: Հասարակ գյուղացի Ավանեսը թե ինչպես էր տերտեր դարձել, ոչ ոք չգիտեր: Նա ինքը ավետարանը հազիվ էր կարդում, բայց ուսումնարան էր բաց արել և աշակերտներ էր պահում:

Շատերն են կարդացել Տեր-Ավանեսի դպրոցի մասին: Շատերի մտքում է նիհար, սև ու երկար մորուքով, մռայլ այդ մարդը՝ ճիպոտը ձեռքին, աշակերտների գլխավերևը կանգնած: Ով չարություն էր անում կամ ուտելիք չէր բերում նրան, ճիպոտը տեսնում էր իր գործը:

Ալեքսանդրը մեծացավ ճիպոտի ու ֆալախկայի ժամանակներում:

Շիրվանզադեի հայրը՝ Մինասը, ուզում էր, որ որդին գավառական դպրոցում ռուսերեն սովորի և օգնի իրեն առևտրական գործերում: Բայց երկրաշարժը կործանում է նրանց տունը, հայրը սնանկանում է և ձեռքն առնում դերձակի ասեղը:

Գավառական դպրոցը վերջացնելուց հետո 15-ամյա պատանին գավառից գնաց Բաքու՝ «մի կտոր հաց շահելու»: Ի՜նչքա՜ն շատ նեղություններ է կրել նա, բայց երբեք չի ընկճվել, ինչքա՜ն պաշտոններ է կատարել նա, տեղափոխվել գրասենյակից-գրասենյակ: Շատ էր կարդում: Գրքերի աշխարհում նա իրեն զգում էր ինչպես հարազատ



տարերքում, իր արտահայտությամբ ասած՝ ինչպես ցորենի շտեմարան գցած հավը: Հայ, ռուս, եվրոպացի հեղինակները դառնում են նրա սիրելի ուսուցիչները:

1880-ական թվականների սկզբին նա հոդվածներ է գրում բանվորների անտանելի վիճակի մասին:

Երբ երևաց նրա առաջին պատմվածքը՝ «Հրդեհը նավթագործարանում» վերնագրով, արդեն զգացվեց գրողի ուժը:

Հեղինակին մեծ փառք բերին նրա հետագա երկերը: Նա ընթերցողին տանում էր հայ գավառական քաղաքը, բաց անում տխուր վարագույրը, ցույց տալիս այնտեղ թաքնված մարդկանց վշտերը, անտանելի, բայց չգրված օրենքները, որոնց զոհ են գնում բազմաթիվ անմեղներ:

Տարիների հետ զորեղացավ և Շիրվանզադեի գրիչը: Երկար ժամանակ նա մտածում էր ստեղծել այնպիսի մի մեծ գործ, որը պատկերի բուրժուազիայի կյանքը: «Քաոսը» հեղինակի փայփայած երազի, նրա երկար խոհերի գեղարվեստական մարմնացումն է: Շիրվանզադեն, ինչպես այս վեպում, այնպես էլ «Պատվի համար» դրամայում և այլ երկերում ցույց է տալիս հայ բուրժուազիայի արատները: Նա պատռում է շահագործողների հասարակության դիմակը: Նրա գրած գործերը ընթերցողին բերում են այն եզրակացության, որ այդ հասարակությունը դեպի կործանում է գնում: Բայց իբրև մտածող նա փորձում է փրկության ելք գտնել կործանման դատապարտված այդ հասարակության համար:

Մեզ համար կարևոր է, իհարկե, ռեալիստ Շիրվանզադեն, որն իրական կյանքն է նկարագրում և ցույց տալիս նրա խոցերը:

Շիրվանզադեն կյանքի վերջին տարիներին, մեր օրերի ազդեցության տակ, գրեց նոր արժեքավոր ստեղծագործություններ՝ «Մորգանի խնամին», ինչպես և «Կյանքի բովից» հուշերը:

«Ես 76 տարեկան եմ: Բայց հավատացնում եմ Ձեզ, ես երբեք ինձ չեմ զգացել լայնապես ազատ, ինչպես վերջին 8 տարիները, որ ես անց եմ կացրել խորհրդային երկրում:

Մարդիկ հաճախ ինձ հարցնում են, ինչո՞վ եք սնվում, որ չեք ծերանում: Նրանք չեն հասկանում, ինչու ես չեմ ծերանում: Ես չեմ ծերանում նրա համար, որ ապրում եմ Խորհրդային իշխանության ժամանակ»,—գրում էր ժողովրդական գրողը 1934 թվականին:

Նա ճանաչված և սիրված անուն էր ամբողջ Անդրկովկասում, ամբողջ Սովետական Միությունում: Ո՞վ կարող է մոռանալ պրոլետարական մեծ գրող Մաքսիմ Գորկու դեռ 1916 թվականին գրած տողերը Շիրվանզադեին.

«...Դուք գրող եք, մարդ, որն ապրում է աշխարհի բոլոր վշտերով և ուրախություններով, դուք ինքներդ գիտեք, թե ինչքան արժեքավոր է, ինչքան ուրախալի է իմանալ, որ Ձեր խոսքը հասկանալի է Կովկասում և Անգլիայում, Սկանդինավյան թերակղզում և Իտալիայում»:

Շիրվանզադեն հայ նոր գրականության մեծ վարպետներից մեկն է: Կես դարից ավելի նա իր ուժերը տվեց հայրենի գրականությանը:

Ժողովուրդը սիրում և բարձր է գնահատում մեծ գրողի ստեղծագործությունը:

# Ծիլը

ՀՈԲՈՍ ԱՊԵՐ

Ցուրտ ձմռան
Օրերն անցան,
Ծիլ ու ծաղիկ
Ողջ արթնացան։
Հողի տակից
Լսվեց մի ձայն.
— Տեղս նեղ է, օգնեցե՛ք,
Մութ աշխարհից հանեցե՛ք,
Հողը չոր է, հողն ամուր,
Ջուր եմ ուզում, միքիչ ջո՛ւր։
Հանկարծ ամպը որոտաց,
Վերից անձրևը տեղաց,
Հողը փափկեց ու փխրեց,
Ծիլն էլ ուժերը լարեց,
Գլուխն հանեց լուսերես,
Ասաց՝ նայե՛ք, ահա ես։

# ԳԵՏԻ ԵՐԳԸ

Գ. ԷՆԳՈՅԱՆ

Ջյունը հալվում, դառնում է գետ
Ու սարերից ցած է գալիս,
Համբուրվում է դաշտերի հետ,
Անապատին կյանք է տալիս։
Հայրենիքին լույս է դառնում,
Բույս է դառնում անապատին,
Տոչոր դաշտերն է ոռոգում,
Ու կյանք տալիս հող ու հանդին...
Եվ առած կյանք ու երգ գարնան,
Գետն է հոսում քաղցրակարկաչ,
Ուր գնում է, իր ետևից
Այգիներ է թողնում կանաչ։
Եվ հոսում է, անհոգ ու ժիր,
Դեպի հեռո՛ւն, հեռուն անհաս,
Ողջույններն է մեր սիրալիր
Տանում երգով մինչև Արաքս...